Armerean, H. G. 601

Hin orer u ayd orerun...

# ՀԻՆ ՕՐԵՐ

ՈՒ

ԱՅԴ ՕՐԵՐՈՒՆ

# ՀԱՅ ՄԵԾԱՏՈՒՆՆԵՐԸ

## 1550–1870

ԳՐԵՑ

## Յ. Գ. Ա.

61 p.






ՎԵՆԵՏԻԿ
ՏՊԱՐԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ
ՅԱԿԱՐԱՆԻ ՄՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ
1901

# ՄՈՒՏՔ

**ՀԱՅ ՄԵԾԱՏՈՒՆՆԵՐՈՒ** վրայ այս պատմական ընծեռուածը՝ խնամով քննեալ ու յաւելեալ վերջին ձեւն է այն հարեւանցի նմոյշին, որ անցեալ տարիին վերջերը տպագրուեցաւ ***Բիւզանդիոնի*** Բանասիրականին մէջ. անոր գրեթէ կրկնապատի՛կը՝ թէ՛ քանակով թէ՛ թափուած մանրակրկիտ աշխատութեամբ, որուն արժէքն այս տեսակ նախաձեռնարկ գործերու մէջ թարթափողները գիտնալու են։

**Յ. Գ. Մ.**

*1900*



# ՀԱՅ ՄԵԾԱՏՈՒՆՆԵՐԸ

## Ա.

ՀԱՅ մեծատուններն առ հասարակ ճանչցուած են Աղբրոյ անունով:

Աղբրո՜յ – Տոհմապետ, Տանուտէր, Մեծաւոր, Չէլէպի, Հօճայ և Աղայ – բառերուն համազօր բառ մը, որ կը պարունակէ տոհմային հին մեծութեանց պարարտ գաղափարը:

Աղբրո՜յ – կը թելադրէ մանաւանդ անծանօթ աւագութեան (dignité) մը գաղափարն ալ՝ բաւական սաստալից ամէն մեծութեանց պէս, որ ունին անծանօթ սկիզբ մը. սկիզբ մը՝ թերեւս նահապետական դարերու չափ հին. ու իրենց անփառ հեղինակութեանն համեմատ մթին այլ իրական:

Պատմապէս ալ անկայն՝ իբրեւ ծագեալ արաբական Մէր, Միր, Միրիմիրան բառերէն՝ շատ նոր է[1] ու կը նշանակէ՝ գէթ ըստ ձայնականին՝ հրամատուր, հրամատիր, եթէ այդ սեմական ժողովուրդին սկզբնական աւանդականութիւնը՝ ժառանգուած չըլլայ յաջորդաբար Միջագետքի և Պաղեստինի տանուտէրներէն ու նշա-

1. Թուրքահայերուն մէջ՝ 1750էն ասդին է որ աւելի պաշտօնապէս կը շեշտուի այս մակդիրն առ հասարակ:

նակէ, ըստ այնմ, Նախադէտ կամ Նահադէտ՝ դրեթէ համազօր նախնի Հռոմայեցիներուն Պոպըլէ կոչումին՝ քիչ մը սեղմելով այս բառին քաղաքական լայնութիւնն և ի փոխարէն լայնելով անոր տանուտիրական առումը:

Ամիրայ բառը՝ մատենագէս չէ յիշուած հայերուն մէջ Մագիստրոսէն, Արծրունիէն, Ուռհայեցիէն առաջ. օրինակ. «Ազդ արար ամենայն մեծաւոր ամիրայիցն», «Ո՛վ մականունդ ամիրայական սերի յԱբրահամէ» Մագիստ. Ը. որով կրնանք ըսել թէ հեղինակական այդ գաղափարէն շատ ետքը մտած է մեր մէջ ամիրայ անունը:

Ամիրաներ ունեցած ենք մենք ալ, և անոնց անունը լծորդուած է՝ մանաւանդ Թուրքահայերուն՝ պատմութեան հետ 1550էն ասդին մինչեւ 1866 կամ 1870, մինչ մեռաւ ամիրաներուն իբրեւ վերջինն[1] ու ծծահատածն ալ — Կարապետ ամիրայ Պալեան, արքունի մեծ հայ ճարտարապետը, Խաչֆան:

Այսպէս՝ ի չգոյէ ժամանակակից ամիրայի՝ արդի սերունդը չէ տեսած ու շօշափած ամիրայ մը, չունի ամիրայութեան վրայ կայուն՝ այսինքն՝ դիրի առնուած գաղափար մը, ժողովածու գրաբար պատմութենէ մը զատ, որ ամիրաներու էութեան և երանգին վրայ ոչինչ կըսէ իբրեւ պատմիչ: Ամիրաներուն անուններն ու դիրքը՝ նոր սերունդին երեւակայութեանը մէջ կը պատկերին, ազդեցութեամբ անհաւասար զրոյցներու և ծայրայեղ կուսակցականութեանց մասնական պատմութեանցը՝ հոմերական հին արարածներուն կամ արաբական գիշերներու արուայիկ պարիկներուն խօլ գիծերովը, այնչափ սերած ենք եւրոպական հեռաւոր երեւակայութեանց անիր վէպերին ու այնչափ անտարբեր մնացած ենք մերձաւոր անցեալին ու ժամանակակից պատմութեան:

1. Վասն զի իրմէն ետքը 1869ին վախճանած է ամիրապատիւ Տատեան Յովհաննէս պէյը, արքունի վառօդապետ ու բարերար Ազգ. հիւանդանոցին ու մատենագրական և դպրոցական ձեռնարկութեանց:

Բայց ամիրաներուն վէպը՝ Զօլան իսկ չգիտէ ու չկըրնար տալ մեզի ինչպէս որ արժան է։

Այդ իրական մութ վէպէն է՝ որ կը փորձեմ այսօր բանալ փոքրիկ սրահ մը, անդիս ժամանակիս և պարագաներու ներածին չափ սրահակ մը, զոր թերեւս ուրիշ պատեհներով կարենամ ալ ընդարձակել ու վերածել մանրանկար ցուցադրութեան մը։

*

Արդի սերունդին բարեբաղդներէ՞ն համարուելու եմ՝ որ խոր աղայութեանս տեսած եմ մէկ հատիկ ջոջ ամիրայ մը, ու պիտի կըրնամ տալ աղօտ գաղափար մը իր ու թերեւս՝ իրմով՝ միւս ամիրաներուն ալ կենդանագիրին վրայ։ Դարձեալ նոյն Կարապետ ամիրան էր այն իմ տեսածս։

Հազիւ հինգ-վեց տարեկան կայի՝ երբ լսելով իրմէն շատ վախցողներուն շշնջիւնը՝ թէ Կարապետ ամիրան կամ Աղան (սոսկ, առանց յատուկ անունի, Աղա՛ն) կու գայ կոր, վազեցի Ինճախյէի զառ ի վերին ծայրը, ուրկէ պիտի անցնէր Ներսէս Աշտարակեցի կաթողիկոսին բարձր թելադրութեամբն և Սեթեան Յովհաննէս վարդապետին ու Տէրոյենց պատուելիին աստուածաբանական ոչ բարձր առաջնորդութեամբը՝ Շահնազարեան Կարապետ վարդապետը դատող և դատապարտող ամիրան, համարձակ Ճէզայիրցիին համեստուկ ո-տին արեւելցի, Վարպե՜տ մարդը։

Զիաւոր էր ինք այն իրիկունը. և ձին՝ միջին արագութեամբ կ'ընթանար զառ ի վերն ի վեր. ետեւէն էր իր անբաժան ծառան՝ Գասպարը. քանի մը անցորդ հայ ալ՝ բարեւի կեցան հոն անցողաբար։ Ինք Խալֆայ Ամիրան՝ իր ձիուն վրայ ուղղաբերձ մը կեցած՝ վաթսուն և հինգնոց մը կերեւէր. Գրիգոր էֆէնտի Գարակէօզեանի ձիաւոր գնացքին բաւական նման ձուլուածով մը, բայց աւելի երկայնահասակ, աւելի տարէց, ու աւելի և աւելի հանդուշն։ Ունէր լայնաբաց փէսի մը ներքեւ կիսով չափ զսպուած անկիւնաւոր ճակատ մը, թանձր լուրջ և քացուած յօնքեր, խոշոր զատապատ ու զարմացական աչքեր, ճերմակ և յորդկէկ պեխեր, նոյն գոյնով և թուլցած այտեր, բերանն ալ՝ բաւական խոշոր։ Կլո-

րակ գլուխն ամբողջ, որուն վրայ ճոխ և գոհ և ծածուկ խինդ մը ծեփուած էր, հայրապետաօրէն յեցած հաստատուն վիզի մը վրայ՝ կը հօհեցունէր ասիական ու պոլսական հին ազնուականութիւն մը, հրաման մը: Շրթունքը կխտացած ու աչքն համարձակահայեաց՝ ամէնապատրաստ դիրք մը ունէին յանկարծ ըսելու և ակնարկելու վեհաբար — Ի՞նչ է ան, ծօ՛ — որուն պէտք էր՝ դէմի աղերսաւորը խոնարհութեամբ պատասխանել ու ըսել անմիջապէս այդ ի՞նչը: Ամիրան՝ այն օրն հագած էր (ու թերեւս մինչեւ ալ կը հագնէր) ֆոֆոլինոլը-ֆոլինոյ մը պարզ, և՝ տասնց գոլայի նոյնպէս պարզ օձիքով ու մթագոյն փողպատով՝ շրջապատուած էր իր մազաւուն փողը. ձեռքն ալ ունէր բարակ շիղ մը եղերուն, որ կը ծառայէր իբրեւ մորակ: Այս ձեւերն էին՝ որ եղբերը, գրեթէ նոյնութեամբ, օրինակուեցան իր ստորակարգեալներէն խորապէս ու ճարպիկ յաջորդէ մը, որ դիզեց իր իրեն չափ հարստութիւն, այլ չունեցաւ իրեն չափ ազդեցութիւն և անուն:

Կանոնական ահուդողով մը՝ Ամիրան քարեւողներուն հետ ես ալ երկու — երեք վայրկեան կեցայ ու դիտեցի մեծարելու ձիւուրը, որուն հետ մեր ընտանիքն ալ ունէր խնամեական կցորդութիւններ, և որուն վրայ կը պատմուէին մեր տունը՝ բաւական ներքին բաներ ալ, ու կը պատմուէին կը սեւեն և կործանազնէն մինչեւ ցարդ: Այո՛, տեսայ ու դիտեցի Կարապետ Ամիրան, ո՛չ Անաքարսիսի մը, ո՛չ ալ Քերոնացիի մը աչքով, այլ մանուկ համարձակութեամբ մինչ թաղիս դպրոցէն ու Արապգատէի լեռնէն անդին չէր անցներ մտային ալ մարմնական ալ տեսութեանցս հորիզոնը. դիտեցի այդպէս, և՝ ողո՜յ՝ ըսի իւրովի — Ամիրան ա՞ս է եղեր. — ինչպէս թերեւս ըսեն հիմայ զիս ընթերցող տղաքն ալ:

Ասոր վրայ տարի մը չանցած՝ ըսին — Կարապետ Ամիրան յանկարծամա՜հ եղեր է: Եւ որովհետեւ լուսանկարը չէր հանած՝ Պէշիքթաշի տանը մէջ, իր անշնչացած մարմինին վրայէն, քաշեցին իր պատկերը: Այս հակիրճ նկարագրէն ուզողին տեսնել փափագողը՝ կրնայ դիտել այդ մեծադիր պատկերն ամիրայական՝ Փափազեան Գէորգ էֆէնտիի որդի Փափազեան Արթաքի

էֆէնտիի տունն ի Սկիւտար, կամ, անկէ օրինակուածը՝ Հիւանդանոցի ընդունելութեան սրահը։

Այսպէս, վաւերական ամիրաներուն իբրեւ վերջինն եղաւ Ճարտարապետ Կարապետ ամիրան Պալեան, որդի Պալեան Գրիգոր ամիրայի և ազդեցիկ հայրը վաղամեռիկ Նիկողոս և Յակոբ Պէյերու Պալեան՝ հայր և որդիք ճարտարապետողք Տոլմապաղչէի ու Չրաղանի դիւթական պալատներու և ամէնն ալ սերունդ՝ անցեալ դարին սկիզբները Պոլիս եկող Բաբերդցի Պալի խալֆային։

Ամիրաներուն իբրեւ վերջինն՝ ինք. իսկ առաջինը, իսկ անոնց սկիզբը՞, ծագո՞ւմը։ Կորդէան հանգոյց, կրկնակի՛ անհեղծուած, ծագումը՝ մութ է շա՜տ մութ, նահապետներէն ալ մութ. այնպէս որ քանի՛ առաջանանք հոս և ո՞րչափ ալ ծերանանք՝ չենք կրնար ըսել կարգ մը բաներ՝ նիւթ հայթայթելու համեմատական ամիրայաբանութեան ալ, ինչպէս տասնիններորդ դարու մօտան էր, ամէն բանին՝ նոյն իսկ Բացարձակին անգամ՝ համեմատականն ստեղծել, երեւակայել, քննել ու բանաքննել և քննադատել անգամ։

Սակայն ես՝ ա՛լ ծերացա՛յ, պատմական պատրաստութեան մը համար, յիշատակարան նայելէն, ծերունիներն հարցափորձելէն, ու ձեռք բերած արդիւնքս՝ չփոխարինէր այժմ յոգնութեանցս գոնէ հարիւրին տասն իսկ։ Հոս շոգիացած, հոն կարծրացած վիմատպուած այդ քրոնիկներէս՝ ինչ որ կրնամ քամել ու համառօտել, կը սերմանեմ ահա պատմական ատաղձ՝ սա միայն խնդրելով որ, ըստ աւանդական ծոյլ սովորութեան, ինք բանաքաղողն ալ գէթ ճանչնայ ու խոստովանի անոնց յարգն ու հանածոյ աշխատութեանս արժանիքը. չապերախտանայ ընկերչակօրէն՝ կարգ մը ճահիլ բանավաճառներու պէս, որոնք սիրեցի՜ ես քան զեղբա՛յր, որոնցմէ խաբուեցա՛յ դարձեալ ես քան զկո՛յր։

~~~~~~~~~~
~~~~~~~~~~

# Բ.

Գործիս սկզբնական դժուարութեանցը մէջ՝ մեր գըլխաւոր աղբիւրներն եղած են այն յիշատակարանները, որ անցեալ ու նախանցեալ դարերին Պոլիս տպուած գիրքերուն ետեւն կը գտնուին. վասն զի չուզեցինք անձնիւր տոհմի սերունդին՝ իր նախորդներուն վրայ պատմածները վաւերական պատմութիւններ սեպել, ոչ ալ հակառակ վկայութիւնները բանի տեղ դնել՝ խորշելով միապէս տոհմային նախապաշարումներէն ու նախանձի գրոյցներէն:

Դժբաղդաբար երկտող այդ յիշատակարաններն ալ անունէ ու կարգ մը մահախօսական անկարեւոր պարագաներէ զատ՝ բան չէին յիշատակեր, ու Պոլիսի տպագրութեան սկիզբն ալ 1567 թուականէն անդին չանցնելով՝ հարիւր տարուան պակաս մը կը մնար, որ չկրցան լեցունել ըստ արժանւոյն աւանդութիւնն և ձեռագիր տետրակները:

Յիշատակարաններուն պակասը լեցուցինք բազմահմուտ դրագէտներու հատորաւոր գործերէն ու ժամանակակից արձանագրութիւններէ՝ [illegible] մեծ դժուարութիւններով, և այդ հարիւր տարուան թերոյթն ալ՝ փորձեցինք պարտըկել կենցաղագէտ ծերունիներու և պատմական հետեւուն գնացքի մը ենթադրութիւններով որ ահաւասիկ:

Չգիտենք հաւաստեաւ՝ թէ 1453ի մեծ դէպքին ականատես Աբրահամ վարդապետին յիշատակած «Աստուածատուր Սաթըլմըշինն, և Սիմէոն Բարի փաշին, և պապայի որդի Այվատն (ու) Պարոն Գէորգն Եչիմ հաճին [1]» ընդ ամէնը չորս հատիկ տաղաչափեալ անկիւրացիներ, իրենց տունն և տեղը ձգելով Պոլիս չե-

1. Ձեռագիր Աբրահամ Վարդապետի, տող 265–268:

կած՝ երեւելի տունե՞ր էին աշխարհակալին կամ իր գաղթեցուցիչ պաշտօնեաներուն ուշադրութիւնը գրաւելու աստիճան։ Բայց շատ հաւանական է՝ որ նոր Ստամպուլի ճոխութիւններով և փառքերով իրենք ու իրենց գաղթակից ուխտը Չէլէպի հայերը Մեծափառն ըտուելու աստիճան երեւելի եղան ու հարստացան ալ քիչ ատենի մէջ։

Ասոնցմէ շատ առաջ՝ մինչեւ 5–6րդ դարերուն կը հաստատէ պատմութիւնն՝ հայերուն գոյութիւնն ի Կ.Պոլիս և բաւական քանակութեամբ, 2–3000ի չափ, որոցմէ կարեւոր անձնաւորութիւններ ալ ելած են, և որոնց մէջ կային անշուշտ վաճառականներ, գիտուններ, սեղանաւորներ ու հողատէրներ ալ՝ որ դուքս կամ Էֆէնտի ըսուեցան, բառեր՝ Մեծափառն նշանակող բառ յունական ախորժակի։

Պոլսոյ առումէն քանի մը տարի առաջ է Ղալաթիա եկեղեցի շինող Կոմս վաճառականը, որուն համապատիւ կոմսեր կային անշուշտ այդ առեւտրական Ջոյնիկոյին մէջ, և ժամանակակից ամիրաներուն պէս՝ ունէին իրենց հետեւորդ հայերն ու փոքր կազմակերպութիւն մը առանուտիրական. բայց պատմութիւնը մանրամասն ու վաւերաբար չարձանագրեր ատոնք, կամ չէ հասած մեր ձեռքը։

Ուստի գալով Պոլսոյ առումին ժամանակները, կը գտնենք՝ որ հին տուներու հատակոտոր շարունակութիւններէն զատ ի հինն Փոքր–Ասիա, որոնց մեծ մասը կոչուեցան Եշխանոսոր, և միւս փոքր մասերը՝ Տէր, Պէյ, Հօճայ, Աղայ՝ Աշխարհակալ Սուլթան Մէհէմմէտ Բ.ի պաշտպանութիւնը վայելող Կ. Պոլսոյ Յովակիմ առաջին պատրիարքին հետ 1461ին Պոլիս եկող՝ Պրուսացի, Գաղատացի, Ամասիացի, Արաբկիրցի և այլ Գարամանցի Սամաթիաբնակ[1] հարիւր – հարիւր քսան տուն հայերէն երեւելիները՝ շնորհիւ նորաշուք պատրիարքութեան ու պետական վստահ յարաբերութեանց, ստացան՝ իբր անմիջապէս՝ եկ ու տեղական ծին հայե-

1. Հ. Ղուկաս Ինճիճեան, Եւրոպիա հատ. Ե. էջ 131:

րուն վրայ և անոնց նշանաւոր ջոջերուն հետ խել մը շատ նախապատուութիւններ ու հեղինակութիւն մը՝ տոհմային և եկեղեցապատական գործերու մէջ:

Եւ ասոնք թուի թէ էին Պոլսոյ մեծատուններուն ծանօթ սկիզբը. և արագ արագ գրաւեցին էսնաֆ տղաներէն ու արհեստաւոր ժողովուրդէն բարձր ու մեծապատիւ դիրք մը:

Այս սկզբնական ամիրաներուն վրայ եկան հետզհետէ աւելցան, փոքր Ասիայի միւս քաղաքներէն, մինչեւ իսկ Երեւանէն, Ագուլիսէն, Ջուղայէն, Դաւրէժէն ու Սպահանէն՝ մեծ և հարուստ տուներ: Ասոնք ալ՝ վերիններուն նման՝ յարելով օսմանեան մեծ անձնաւորութեանց՝ ժամանակին անցուկ միջոցներովը՝ գլուխ կեցան պետական գործերու Աղայ, Պաշի, Հօճայ, անուանով, իբր հաւատարիմներ տէրութեան, և իբրեւ դարձեալ այնպիսիներ՝ պետ կարգեցան ու կոթողեցան տոհմային ալ գործերու միւթէվէլլի և հօճայ[1] կամ չէլէպի անուններով: Ամիրայութեան ծագումն՝ այսպէս կը գտնենք Պոլսոյ մէջ:

Այս պոլսական մեծատունները՝ շուտ համակերպեցան պետական ու մայրաքաղաքական շփումներով՝ տեղական տիրող տարազին թէ լեզուով, թէ բարքով, թէ հանդերձանքով. միայն՝ կրօնական աւանդութեանց պինդ փարելով՝ կըրցան պահել հին բայց տարտամ տիպ մը:

Ասոնցմէ պատմութիւնը կը յիշէ նախ վերն ակնարկուած գաղթականներուն վրայ՝ 1600էն 1630 երեւելի Խալֆա Աստուածատուրն ի Պոլիս, որ սիրելին ու եղբայրը պէս էր ժամանակին Օսմանեան Վէզիրին և անոր միջոցով մեծ գործեր կը տեսնէր: Նոյն միջոցներն (1621 յունուար 17ին) է պատահած նաեւ Վափորոնն ի չար՝ տարեգիրքերուն մէջ յիշատակուած՝ ամենասաստիկ ցուրտ և ձմեռ մը, որ սառեցուցած է Նեղուցը, և Ղալաթիայէն Սկիւտար քալելով գացեր եկեր են Դանուբի պէս[2]: Հոս՝ 17րդ դարին սկիզբները՝

1. Տեսած ենք ամիրաներու տրուած պետական փառաւոր պէրաթներ՝ դիւանական լայն — տողձսկայն գրչութեամբ, մինչեւ 27 1/2 տողնոց:

2. Դարապատում և Ամարանոց Բիւզանդեան (էջ 35) կը յիշեն զայս:

կը յիշուի նաեւ, իբր այր անուանի, Տիվրիկցի Աստուածատուր Պօլոզմէն կոչուածը՝ հանճարեղ ու քաղցրաբարոյ՝ որ բարձրագոյն Դրան մեծամեծներուն և Գրիգոր Պարոն–տէր Երուսաղէմի պատրիարքին սիրելին էր: Մեծ դժուարութիւններէ ու ներքին հակառակութիւններէ ետեւ՝ յաջողեցաւ շինել վերոյիշեալ պատրիարքին հետ Գալաթի Ս. Հրեշտակապետ եկեղեցին, (Ժամանակագրական պատմ. Երուսաղէմի առ. 1890 հատ. Ա էջ 308): Կար 1844–49ին Տիարպէքիրցի Մաղաքիա Չէլէպի մը, որ սիրելին էր Մեծ Եպարքոս Մէլէք Ահմէտ փաշային և կատարեց յիշատակութեան արժանի գործեր, զոր կը գովէ Երեմիա Չէլէպին ալ:

Պատմութիւնը կը յիշէ նաեւ՝ նախնական մեծատան Խոջէնտէր Չէլէպին, որ բարեկամ ալ էր Կոզմէս Գալանոս բժիշկ – կրօնաւոր մատենագիրին, և հիւրընկալեց զայն՝ ժամանակին կրօնական հակառակութեանց առթիւ: Խոջէնտէրի Չէլէպի մակդիրը՝ կենթադրէ որդէն իր վրայ բաւական ֆրանկօֆիլ՝ ժամանակին բացորոշ և բացորոշող բառովը: Կայ իրեն ժամանակակից Խարբերդցի Ոսկանակէս անուն երեւելի մըն ալ, որ իր հարստութեամբն և ազդեցութեամբ բաւական օգտակար եղած է իր ժամանակակիցներուն[1]:

Դարձեալ պատմութիւնն առաջին անգամ 1647ին կը յիշատակէ՝ հայ մեծամեծներու պատուիրակ երթալը Էջմիածին, Պօլսի կրօնական երկպառակութեանց համար հայցելու Փիլիպպոս կաթողիկոսին խաղաղական միջամտութիւնը: Նաեւ Վանեցի Ռուհիջան հօճան (մեծ եպարքոսին հայ քիւրքճիպաշին) իբրեւ պետ կրօնապատրիարքական կուսակցութեան մը ու գործակից պատրիարքական տեղակալներու. նոյնպէս Խոճա Աստուածեանց և Չերազ Գերպաքեանց[2]: Այդ աշխարհա-

1. Երեմիա Չէլէպի՝ առ Հ. Ղուկաս Ինճիճեանի. Աշխարհ. Եւրոպա. հատ. Ե, էջ 129–130, Սահ. ծանօթութեանը մէջ:

2. Հաւանաբար ասոնց սերունդէն ըլլալու է Ջուղայեցի Պայծառ իշխան Աղայ Յօհանջան Գերպաքեան՝ բնակեալ ի Հնդիկս, ի Սուրաթ, որոյ ծախքովը

կան մեծերէն մէկ քանին՝ 1640ին Դուբեթի պատ-
բերազմութեան առեն՝ յաջողեցան նաեւ 10–15 ամիսի չափ պատրիարքական աթոռն ելնելով՝ կառավարել ժողովուրդը, առանց եկեղեցականի առանց կրօնական նախապատրաստութեան¹:

1650–55ին կը փայլի Պրուսացի Անտոն Չէլէպին բազմահարուստ, որ տուաւ շատ դրամ Փիլիպպոս կաթողիկոսին՝ Էջմիածինի մեծ զանգակատունին շինութեան համար: 1632–1635ին Պոլսոյ բնիկ հայերուն մէջ տիրած էր իշխելու եւ եկեղեցական եկամուտներն ինքնահրաման առնելու յաւակնութիւն մը, որով արեւելցիները՝ այսինքն Անատոլուէն եկողները կը նկատուէին արհամարհութեամբ մը իբրեւ «գռեհիկ», ըստ Առաքել Դաւրիժեցւոյ: Արեւելցիներն ալ մի՛շտ կը բողոքէին, որով երկուստեք անպակաս կըլլար կռիւն եւ դուռ կը բանար մեծ ծախքերու. Փիլիպպոս կա՛թողիկոս շատ աշխատեցաւ վերջ տալ այս վէճերուն:

1652ին կը յիշուի Խաչկոյ անուն Իլովացի հայ դատաւոր մը, որ կաթողիկոսական խնդիրի մը համար կու գայ Պոլիս՝ Իլովի հայերուն կողմէն եւ ազդեցութեամբը կը կարգադրէ զայն. սա ինքն ալ՝ իր ժամանակի ամիրապատիւներէն էր:

1655ին՝ նորէն կարգ մը մեծատուններ ձեռք կ'առնեն պատրիարքական տեղապահութիւնը: Այսոնցմէ մէկ քանին կը վարէին արքունական դեսպաններու թարգմանչութիւնը, տեղեակ էին արեւմտեան պատմութեանց ու սովորութեանց ալ: Քանի մը տարիէն՝ քսան եւ չորսի հասած կը գտնենք թիւն այս տեղակալներուն, որոնց մէկ քանիին անուններն են՝ Խոճայ Տավուտ, Խանճի Սէֆէր, Էքմէքճի Պէկլէր, Քէրէստէճի Գրիգոր, Սիմէոն երէց, Քիւրքճի օղլու երէց, Պօտուռ Սիմէոն, Մկրտիչ, Մուրատ, Յարութիւն Պալի, Ֆէրհատ օղլու եւ այլն. եւ ասոնց ձեռընտու էր՝ յիշեալ վանցի Ռու-

տպուած է երկու մեծահատոր ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԹԷԼԷ-ՄԱՔԻՆ, թարգմանութիւն Մարգար Զաքարիայի խօջենց:

1. Չամչեան գ. էջ 627–629:

հիջանը։ Ասոնք էին նաև Թոմա պատրիարքին հակառակորդներն ու անոր մահուան պատճառները, և առանցմէ դարձեալ ծայր կու տայ Եղիազարեանց ու Թլիթըլեանց հոչակաւոր վէճը պատրիարքական։

Տասն և ութներորդ դարուն այդ մեծերուն մէջ է նաև ներհունն Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան, բարեկամն Այնթապցի Եղիազար կաթողիկոսին, նաւասար և դրագէտ ու մատենագիր մեծատունն՝ երէց եղբայրը Տէր Կոմիտասի[1], որ և նախ Սամաթիայի Ս. Գէորգ եկեղեցւոյն աւագ սարկաւագն էր, և վախճանեցաւ 60 տարեկան 1695ին։ Գրած է հինգ գիրք պատմութիւն Օսմանեան թագաւորութեան ընդարձակ, Գիրք մը՝ անոր համառօտութիւնը, միւս Գիրք մը ոտանաւոր՝ Յակոբ կաթողիկոսի խնդրելովը, Աղեքսանդրի պատմութիւնը՝ նոյնպէս ոտանաւոր. թարգմանած է թուրքերէնի՝ Խորենացիէն քաղուածներ. գրած է՝ գերման դեսպանին խընդրելովը՝ պարսկական, հնդկական և Փոքր Ասիայի աշխարհագրութիւններ. Գիրք մը ընդդէմ Հրէից, Քարոզներ, ճառեր՝ հայերէն տաճկերէն. պատմութիւն Երուսաղէմի, թարգմանած է թուրքերէնի՝ Աւետարանն և ինչ ինչ կտորներ Հին կտակարանէն. թարգմանած է յունարէնէ ու լատիներէնէ գիրքեր. տպագրել տուած է իր հեղինակութեամբն երկու հատոր Գիրք – Մնացորդք Յիսուս որդւոյ, և Տնօրինական տեղիք. գրած է ժամանակակից խնդիրներուն վրայ՝ ընդարձակ նամակներ առ կաթողիկոսս և պատրիարքունս, նաև յորդորականներ, տեղեկագիրներ ու յիշատակարաններ վանքերու վարչութեանց և արտօնութեանց վրայ, ճանապարհորդած է Փոքր Ասիայի շատ քաղաքներն ու գիւղերը, ինչպէս նաև՝ Պէրութ, Բերիա, Երուսաղէմ, Արմաշ, և այլն։ Գրած է նաև ստուգութեամբ իր ժամանակին պատմութիւնը, որմէ Չամչեան առած է շատ բան. մենք շատ փնտռած ու հարցուցած ենք իր այս գործերն ու չենք գտած. նոյն իսկ ամէնէն բազմահմուտ անձերու քով և ամէնէն բազմահատոր մա-

1. Տես Չամչեան հատ. Գ: Եւ Վարք Տ. Կոմիտասի, էջ 9-10 :

տենադարաններուն մէջ։ Կը թուի շատոնց ինկած են Վենետիկի մատենադարանն ու հաւաքագրուած վարդապետ մատենագիրներէն։ Իր գրաբարն ունի խաթուն արծաթի ձուլուած մը՝ տարբեր ժամանակին լատինական անոճ ոճէն, որ ճարտկելու վրայ էր Ոսկան Երեւանցիին հրատարակութիւններովը։ Իր տպուած քանի մը հատուածներէն կը համարձակինք ըսել այս դատաստանն ալ։ Երեմիա Չելեպին՝ ցաւսիրտ անձնաւորութիւն մըն ալ է եղեր, ու իր գրական յառաջադիմութիւնները՝ գործի մը կանխուած են Վենետիկի ու Պոլսի գրական նախանցեալ դարի զարգացումներուն։ Իր ծագումն է Ակնէն[1], 1600 թուին։

Դարձեալ նոյն 1600 թուէն է հռչակաւոր և հին Տիւզեանց ծագումը՝ Տիվրիկէն, ուրկէ նոյն թուին գաղթած է Յարութիւն անուն կաթոլիկ հայազգին[2] ի Կ. Պոլիս, և իր ճարտար ոսկերչութեան շնորհիւ յաջողելութեան մտնելով կայսերական պալատան հետ՝ կանուանի հոն փեշքէշ ոսկեղէն, կը բանայ իր անունովը կայսերական գանձատան քով ոսկերչութեան խանութ մը, որ մինչև 19րդ դարի սկիզբը կանգուն էր Տիւզեան անունով։ Տիւզեանք 18րդ դարէն սկսեալ բնակած են Գուրուչէշմէ գիւղաւանը։ Յարութիւնի մահէն ետքը՝ արքունի ոսկերչապետութիւնը կը մնայ իր որդւոյն Մահտեսի Սարգիսի, որուն բարձրահասակ, կաշմբուռն և ուղղորդ[3] կազմուածքն առաջին անգամ տեսնելով Վեհ. Սուլթան Ահմէտ Գ. արքունի պարտէզին մէջ «սա Տիւզը ինծի կանչեցէք» կը հրամայէ, որմէ կը սկսի ալ ատոհմին Տիւզ անունը։ Տիւզ Սարգիսէն կը ծնին Տիւզ Յովհաննէս ու Տեվլէթ աղաները, և Տիւզ Յովհաննէսի որդին էր Հոճա Միքայէլ Չելեպին (ծն. 1724 մահ. 1783) Տիւզեան գերդաստանին փառաւորագոյն զարդը, որ միապէս հմուտ էր նկարչութեան, ոսկերչութեան և ստորագիտութեան ու ժամանակա-

1. Վարք Տէր Կոմիտասի, էջ 9։
2. Ազգաբանութիւն Զարմին Տիւզեանց. Հ. Գաբրիէլ Մէնէվիշեան, Վիեննա, էջ 6–7։
3. Նոյն. անդ, էջ 9–10։

կից նախանձներու նշաւակ ալ եղաւ իր բարձր արժա-նիքովը. իր մէկ խօսքովը՝ 1701ին 53 հոգի ազատեցան, ու 1769ի պատերազմին ալ՝ իմաստուն միջամտութեամբ մը ազատեց Յոյները: Այս Հօճա Միքայէլի որդին է Յովհաննէս Չելէպին (Ծն 1749. Վխճ. 1812), որ շատ ուսումնասէր էր և ուսումնական ալ. ինք էր Դիւրոյ Բիւզանդեանն հրատարակել տուողը, և շատ գիրքեր ալ իր ծախքովը հրապարակ ելան, ասոր Իսկուհի ա-նուն աղջիկն էր, որ Հ. Ա. Կ. Բագրատունիէն անուա-նեցաւ «հայկաբան»: Յովհաննէս Չելէպին թողուց 12 զաւակ, որոնց մէջ էին Սարգիս, Գրիգոր, Յակոբ ու Միքայէլ Չելէպիները, և ասոնց պատմութիւնն հա-մառօտիւ ըրած են Ա. Պէրպէրեան ու Հ. Գ. Մէնէվի-շեան[1]: Տիւզեան ընտանիքն ամենէն հին ու նշանաւոր ընտանիքներէն է Պոլսոյ, որ թիւով նուազ ու դիրքով և տաղանդով առատ՝ բացառիկ փայլ մը տուին բիւ-զանդեան հայութեան:

Դարձեալ 17րդ դարուն կէսերը կը յիշուի Սեմէրճի Տէտէ կոչուածով Կասըմցի Մուրատ հօճայ մը, որ վայելած էր Վեհ. Սուլթան Մէհէմմէտ Դ.ի վստահու-թիւնը և ազդեցիկ անձ մըն էր Տէրութեան մէջ, որով մեծ յաջողութեամբ կը միջնորդէր պետութեան ու տոհ-մայիններուն:

## Գ.

Նախ, անցեալ 17րդ դարու կէսէն ասդին հետզհետէ՝ կ'ընդարձակին նաեւ Ռուսաստանի, Պարսկաստանի և Թուրքիայի ու, հետեւաբար, Պոլսոյ գլխաւոր տէրերուն ե-ղող հայերուն գործառնութիւններն ու ազդեցութիւննե-րը: Նոյն ժամանակի Պոլսոյ գաւառացի երեւելի վաճա-ռականներէն էին նաեւ՝ Պարոնայք Միրզէ ու Խոսրով,

1. ԱՕդ, էջ 25–40:

Յակոբ կաթողիկոսի ծանօթները. (աւետարանական ամբ-րաններուն ամէնէն ջոջերը կը համարուին 18րդ դարուն Սամուէլ Մուրատ և Ռափայէլ Հնդկաստանի մեծ թան-գարաններն ու Մխիթարեանց Վենետիկի Վանքին* մեծ բարերարները)։

Բայց Պոլսոյ մէջ ժամանակակից ամէնէն նշանաւոր դէմքն է Աղրոյ Չելեպին՝ եպարքոսին մարդն և խոր-հրդականը, Եղիազար Այնթապցի Կաթողիկոսին մտե-րիմը և պաշտպանը։

Տասն և եօթներորդ դարին Երուսաղէմի Գրիգոր Պա-րոն — տէր Պատրիարքին ժամանակակից է նաեւ Բաղի-շեցի մահտեսի Ամիրաղիկ ամիրխան բան-ատէր ու աս-տուածատէր աղան, որ շատ տեղ՝ մինչեւ Հռոմ իսկ՝ ուխտի գնաց, իմաստասէրի մը վայելուչ անխտրու-թեամբ և իր բարեկամ Պարոն — տէր Պատրիարքը կարգեց զինքը Վանքին նուիրակ՝ քաղցրաբանութեանն և նախանձաւորութեանն համար։

Այդպէս՝ աշխարհական կրօնասէրը՝ իր համբոյր բար-քովն ու անբիծ վարքովը օգտակար եղաւ Երուսաղէմի Աթոռին վարդապետէ մը աւելի. անուշ լեզու Ամիրա-ղիկին ձեռքով ամէն մարդ առատ դրամ կու տար Վան-քին՝ բաւ էր որ ինք բերան մը խնդրէր։ Եւ վախճա-նեցաւ յԵրուսաղէմ։

1681ին պոլսոյ հայերը բնակած կը գտնենք գլխա-ւորաբար Գում-գաթու, Վլանկա, Եէնի Գաբու, և ասոնց եկեղեցին էր Ս. Աստուածածին մայր եկեղեցին։ Սամաթիա ունէր 1000տուն, եկեղեցի՝ Ս. Գէորգ. իսկ Եէնի Գաթու և Պալատ՝ եկեղեցի Ս. Հրեշտա-կապետ. Ղալաթիա՝ Ս. Գրիգոր Լուսաւորիչ. Սկիւտար Եէնի-մահալլէ՝ Ս. Կարապետ։ Նոյն դարիներն, ըստ եւրոպական ժամանակագրի մը, պոլսոյ մէջ կային իբրեւ 40000 բնիկ և 30000 պանդուխտ Հայեր։

Ամիրաներէն Պատրիարք ալ եղածը կայ, ու թերեւս ժամանակին պահանջներուն կամ իշխանութեան համաձայ-նութեամբ։ Հազար վեց հարիւր եօթանասունեւինին

* վարժարանին այժ, բայց վանքին և ոչ բնիկոն մը։ Ն. ԲԱԶՄՎԳ.

մեծատուններէն, Էջմէջեհի Պաշի Սարգիս բարձրացաւ, արխարհիկ վիճակովը, մինչեւ պատրիարքական տեղապահութեան. առաջ եկեղեցական դառնալով եղաւ պատրիարք ալ ինչպէս կարձանագրէ նաեւ Չամչեան[1]:

Եւ այս յանդուգն նախընթացին վրայ՝ 1684ին դարձեալ աշխարհական երեւելիներէն Սաղայ օղլու և Շահին անուն ամիրաներ՝ կելնեն Պոլսոյ պատրիարքական աթոռը, և կը վարեն զայն քանի մը տարի: Այս միջոցին (1685–1706) տեղի ունեցած են մեծ յուզումներ պատրիարքական աթոռին շուրջն և Պոլսոյ հայերուն մէջ ու հասարակ, ինչպէս արձանագրուած է 1709ին Պոլիս տպուած Ագաթանգեղոսի մը յառաջաբանին մէջ: Գրիչն այսպէս կ'ըսէ «Յորժամ նորին (Տէր Աղեքսանդր կաթողիկոսի) հրամանաւ եւ նուաստ Աստուածատուր վարդապետս՝ ձեռնատուն աշակերտ ի մանկութենէ սոյն հայրապետիս գոյի՝ ի նուիրակութիւն ի մայրաքաղաքս Բիւզանդիոն, եւ ինձ զգիրքս զի բերեալ տացից մահտեսի Գրիգոր դպրին՝ զի տպեսցէ և ՌՃԾԶ թուոյ և յամսեան ապրիլի եօթներորդի ժամանեալ հասի ի Կ. Պոլիս, և տեսի զի խառնակութիւնք յոլովք յուզիւր ի քաղաքիս. ամենեցունց յայտ է յաղագս որոյ եղեւ խափանումն իրողութեանս մինչեւ ի թիւն ՌՃԾԸ»:

Բայց 1704էն մինչեւ 1706՝ հաշակաւորն Աւետիք Պատրիարք, իբրեւ նախանձաւոր եկեղեցականներու իշխանական իրաւունքին, կը յաջողի վերջապէս բաւական նեղը ձգել ատենին ամիրաներուն հարուստներն ու իշխանաւորները. անոնց ալ միաբանելով՝ կը հրաժարեցունեն զինքը: Ահա այդ միջոցներուն է, հաւանաբար, որ կը զայրանայ ու տեւական կամ պատմական երեւոյթ մը կ'առնէ՝ վերի գրիչին յիշատակած յուզումներուն հետ՝ պատրիարքութեան և ամիրայութեան մէջ իրարու վրայ իշխելու և իրարու հրամանահան ըլլալու նախանձաւորութիւն՝ մանաւանդ թէ հանուրին տեսակար կերպ մը, որ տեւած է մինչեւ 1863 թուականը, և, շրջան ընդ մէջ, մինչեւ մեր օրերն իսկ:

1. Հատոր Գ:

Նոյն տարիներն է (1705)՝ որ Աւետիք պատրիարք կերթայ ֆրանսական դեսպանատունն՝ հետը առած երեքհարիւր երեւելի և հարուստ հայեր, բանադրանք մը վերցունելու համար: Դարձեալ՝ երկու տարի ետքն՝ 1707ին՝ է որ, եպարքոսական հրամանով, Խաչատուր Մարկոսեան և Տօնապետ Վարդանեան ազդեցիկները ճամբայ կ՚ելնեն Կ. Պոլիսէն Երուսաղէմ՝ գտնելով Աւետիք ծածկեալ պատրիարքը բերելու համար, ու կը վրիպին, Ֆերիոլ դեսպանին նախապատրաստեալ երկդիմութեամբը. Թէպէտեւ ժամանակին Օսմանեան Վեհապետն ալ ջերմ փափաքող էր, հայ ժողովուրդին հետ, արեւմտացեալ Աւետիքի դարձին:

Վիպական այս դրուագներէն առաջ, որ Թուրքահայերուն պատմական ամէնէն անանդորր փուլերն են, ու չղթայակիր Գրիգոր Երուսաղէմի խաղաղիկ պատրիարքէն քանի մը տարի առաջ՝ նոյն վանքին եղծութեանն հզօրապէս օգնած են ժամանակին ամիրաներէն Թէվէքէլլեան Յարութիւն, Պոլսեցի Մահտեսի Իսրայէլ, Մահտեսի Լութֆի և Ակնեցի Երեւանենց՝ մահտեսի Սեղբեստրոս Պապիկեան Պաշը, որ էր ճոխ սեղանաւոր և եղաւ վաճառապետ արքունի[1]: Այս օգնողներուն մէջ ամէնէն ազդեցիկն եղած է՝ Կեսարիայի Տալասու գիւղէն Արապ օղլու Մելտոնը[2], ճարտարապետ Վեհ. Սուլթան Ահմէտ Գ.ի, որ Բ. Դրան ալ մեծաւորն էր[3]. նաեւ մահտեսի Սեղբեստրոսի ընկեր՝ Հովուեան մահտեսի Յարութիւն. նոյնպէս Կեսարացի Սարգիս Խալֆան, որ ժամանակին արքունի ճարտարապետն ու Ղալաթիայի եկեղեցին վերաշինողը, միւս եկեղեցիներուն ալ պաշտպանն էր: Եւ սոսոնք ամէնը կը յիշուին ժամանակին գրուածներուն մէջ պերճաշուք անունով: Կան դաս մը մահտեսի պայազատներ ալ, որ յիշուած

1. Յովհ. Հաննայ, Բ. տպագրութիւն 1767ի, էջ 139: Երուսաղէմի Աթոռին այս բարերարը վախճանած է ի Պոլիս՝ Իսահակ պարթեւի տօնին իրիկունը, 1754 փետր. 5ին:

2. Հ. Ղուկաս Ինճիճեան, Եւրոպիա էջ 131: Նաեւ Բ. ծանօթութեան մէջ:

3. Նոյն, անդ, էջ 169:

են Պոլսի տպագրութիւն հին Հարանց վարքին յիշատակարանին և ուրիշ ձեռագիրքերու մէջ, ամէնն ալ սիրող Երուսաղէմին ու խաղաղութեան և ամէնն ալ սիրուած անոնցմէ։

Երուսաղէմի մէջ Գրիգոր Շղթայակիրի ու Պոլսի մէջ Յովհաննէս Կոլոտի Պատրիարքութեան իբրև քառորդ դարուան միջոցը՝ կ'երևի Արծաթ դար մը շինութեանց և ուսումնասիրութեանց, մինչ ամիրաներ, մահտեսիներ, աղաներ և ուսումնասէր վարդապետներ ու եպիսկոպոսներ՝ չուրջն առած այդ երկու ամլածիններուն¹՝ կառուցին իմացական բարեսիրական և աստուածսիրական շատ բաներ, ու տպագրեցին և թարգմանել տուին կրօնական ու պատմական շատ գիրքեր։ Այդ արծաթ դարին ծաղկած են, ի մէջ այլոց, Ճամհուկառէ լեզուագէտ Յակոբ դպիրը՝ Թարգման Շուէտի դեսպանին ի Պոլիս, որուն բարեկամն ալ էր Նալեան Յակոբ յաջորդ պատրիարքը. և անոր թարգմանել կու տար իր փափագած եւրոպական հեղինակները. նաև Կեսարացի Բարսեղ արքունի նկարիչն հռչակաւոր, որ քաշած է բարձր անձնաւորութեանց կենդանագիր պատկերները։

Ասոնցմէ ետքը կու գայ՝ Ճէվահիրճի Մաղաքիա Չէլեպին, ազգական Երեմիա Չէլեպիին և Սեղբոսեան Յովհաննէս Չէլեպի կամ Մարգիզ՝ մատենագիր ամիրան, որ իտալերէն և հայերէն քանի մը հրատարակութեանց հետ ունի նաև գրած իտալական պատմութիւն մը և Տ. Կոմիտասի վրայ ծանօթութիւններ։ Քիչ ետքն է նաև՝ որ հետզհետէ կը ծաղկին Նալեան Յակոբ պատրիարքի խաղաղ օրերուն յառաջադէմ ամիրաններն ու արուեստապետները, որոնց վրայ կ'արժէ կատ գրել ուրիշ աւելի լայն պատեհով մը։

1. Բաղէշի Ամլորդւոյ վանքէն էին անոնք, և գլխաւոր աշակերտները՝ Վարդան Բաղիշեցի մեծ վարդապետին։

դիրներու մասին թէ համեմական հատուածի մասին բռնած է իրաւարար դերը մը և կատարած է հաշտ դեր մը՝ հնարաւոր իրաւախոհութեամբ ու միջին քաղաքագիտութեամբ մը, որով մեծութիւնք, արուեստք, դպրոցական, եկեղեցական, գրական և վանական զարգացումներ դիւրաւ կըրցած են արմատ ձգել ժամանակակից տոհմայիններուն մէջ: Կոլոտի ու Նալեանի օրերէն է՝ որ Թուրքահայերուն ընկէ յառաջդիմութիւնը կը ձգէ խորունկ արմատ՝ մը, որմէ կը բուսնին և կ'ընձիւղին ցայսօր կատարուած իմացական ու արհեստական բարգաւաճումները:

Այս միջոցներուն կը սկսի նաև փայլիլ ի Ռուսիա՝ Յովհաննէս Լազարեան ազնուականը, որ ծնած է Բեդըրպուրկի մէջ երկու հայ եկեղեցիներ ու կտակած է երկու հարիւր հազար ռուպլի՝ Մոսկուայի մէջ հիմնելու Լազարեան Ճեմարանին համար:

Նոյն միջոցները կը սկսի նաև յիշատակուիլ Ռուսահայերուն մէջ՝ Արղութեանց երկայնաբազուկ տոհմը, որմէ էր Յովսէփ ընտրեալ կաթողիկոսն Արղութեանց և Հասան Ջալալեանց հին գերդաստանը, որ յաճախ յիշատակուած ու արձանագրուած է: Այս վերջինին չառաւիղէն էր 1840էն առաջին իբրև մատենագիր ու իբր առաջնորդ Վրաստանի և Իմէրեթի փայլող Սարգիս արքեպիսկոպոսն Հասան Ջալալեանց. կը գրէր յատակ ու կշռելով գրաբար մը:

Իսկ Պոլիսի մէջ ծաղկած ու փայլած է նոյն տարիները (1730) ամէնէն երեւելին թուրքահայոց — ակընցի Սաղուալ ազան կամ ամիրան, որ հիմէն նորոգած է Մուշի Ս. Կարապետի վանքը, որ և մայրաքաղաքի ամենազգի ժողովուրդներէն մեծարուած էր, ու հայերուն մէջ ցայն վայր չէր տեսնուած իրեն հաւասարազօրը մը. մարդ՝ Ղազէզի պէս: Իսկ իրեն ժամանակակից՝ փայլած են նաև ապուշեխցի Ազատեան ամիրաները, որոնց տապանաքարերը կը կենան դեռ Սկիւտարի հայերուն գերեզմանատունը, ակընցի Մոմճի Սարգիս ամիրան՝ որդի Խաչատուրի Մոմճեաններուն նախահայրը, որուն յաջորդները սերնդաբար դրամէր մարդիկ եղած են, մանաւանդ Մոմճեան Մկրտիչ աղան, որ ունի գործօն և նշանաւոր դեր մը 1835էն 1855:

1749 Թուականներուն էր նաև Սահաթճի Եուսուֆ՝ Պոլիսի Եուսուֆեանց նախահայրը։ Նոյն միջոցներն Ապրօ Չելէպին միջնորդելով Դրան մեծերուն՝ տուաւ հայերուն համար Կրէտէի Քանտիա քաղաքին Յունաց Ս. Գէորգ Եկեղեցին, որ այնուհետև կոչեցաւ Ս. Կարապետ։

Ասոնցմէ տասը — տասնևհինգ տարի ետքը կու գան արքունի ոսկերիչ և դրամապետ Տիւզ Միքայէլ ամիրան, որուն ծագումն և վերջալ[illegible]երն յիշեցինք անուանաքար և մահտեսի Տատ Առաքել ամիրան 1, համանուն գերդաստաններուն նախահայրերը, մեծահաւատ ըսուած Մուրատ ամիրան և Պաղտասար ու Մուրատեանց Գասպար ամիրաները 2։

Ասոնք են, ըստ մեծի մասին, կարգ մը երկրորդական ամիրաներու և Թարմասար ազգաներու հետ՝ ակընցի նախնական ամիրաները, որոնց արտակարգ փայլելուն մեծ պատճառը կը թուի դարձեալ ինք՝ Նալեան Յակոբ պատրիարքը, երբ անոնց համշէրին ակընցի՝ ըլլալով ինք ալ Զիմառայ գիւղէն։

Հինաւուրց այս ակընցիներուն յաջորդելով է՝ որ հետզհետէ կը ծլին ու կը մեծնան միւս ակընցի Թանձրախօսիկ և Խորամանկիկ ամիրաներն ալ, որ երևեցան ու ճոխացան մինչև 1840՝ իրենց երփնազանգուած ու տեսակ կարգ անցած վարպետորդիութիւններովը։

1760-1765ի միջոցը փայլած են մեծ Վէզիրին վաճառապետ՝ Պօղոս Ղազար և Ասլան Ամիրաները, որ Վէզիրին մեռնելէն ետքը բանտարկուեցան և քարեխօսութեամբ ազատեցան. բայց Ղազար ամիրան ինկաւ, և իրենց երեքին միանգամայն յաջորդեցին Ճանոսեանց Յարութիւն Սարգիս ոմն և Սագայեան Մարտիրոս։

Նոյն 1750-65ի միջոցին է՝ որ կը շինուի հոյակապ

1. Կաղզուանցի Պօղոս վարդապետ՝ գրած է ոտանաւոր գովեստ մը ի Մահտեսի Տատ. Առաքել ամիրայ, տես ի տետրակն «Զուարճութեան կենցաղոյս» տպեալ ի Պոլիս 1805։

2. Յիշատակարան ճաշոց գրոց, տպեալ երկրորդ անգամ ի Պոլիս 1793ին և հինգերորդ տպագրութիւն Նարեկի՝ 1774, ի յիշատակարանին։

մեծ — Նոր խանը, և Վալիտէ խանին հետ կ՚ըլլայ գըլխաւոր կեդրոն ու օթեւան սեղանաւոր — վաճառական հայ ամիրաներուն և մեծատուններուն՝ մանաւանդ սեղանաւորներուն, որ այդ հսկայակուռ չէնքերուն մէջ ունէին հսկայակուռ առեւտուրներու ձեռնարկներով իսկ՝ չկըրցան դարձեալ մինչեւ տասնեւիններորդ դարու իբրեւ կէսէն ասդին ալ անխարխար պահել, այդ խաներուն չորեքկանգնեան վէմերուն և որմերուն հետ, իրենց հարստութիւնն և հեղինակութիւնը. չկրցան սիրել զիրար անձնախանձութեան մը չափ ու տեւել համերաշխաբար իրենց նախանձելի դիրքին մէջ։ Մեծ Նո՛ր խանը մանաւանդ՝ հայ ամիրաներուն խորանն եղած է հարիւր տարիի մը չափ։

Ասոնցմէ դուրս և ժամանակով աւելի նոր է՝ Զարպխանէ Սարրաֆի Ծերունեն և Քասա օղլուն, որոնց Ապուչեխցի Բեզըրգի հուչակաւոր Չէլէպին ծառայած էր նախ և ապա յաջորդած։ Այս Բեզըրգի հայ-հռոմ Չէլէպիին ազդեցութիւնն ու պատիւը մեծ էր օսմանեան ազնուականներուն մէջ, որոնցմէ շատն հարստացան՝ միայն իր հաշուագէտ գործառնութեանց շնորհիւ. բայց ինք ու վերոյիշեալ Եաղուպ աղան ալ՝ չգիտնալով խոնհեմութեան սահմանին մէջ կանգ առնել, շուտ ինկան[1]։

Ակընցի այս Եաղուպ աղան Յովհաննէսեան. Նալեան Յակոբ պատրիարքին՝ ամէն գործերու մէջ՝ ձեռնտու էր, և Նալեան ալ իր Երուսաղէմական պատրիարքութեան միջոցին շատ անգամ կը թղթակցէր անոր հետ և կը հրաւիրէր ալ ուխտի յԵրուսաղէմ՝ կոչելով զայն վաճառականաց արքունի. նոր Յովսէփ գեղեցիկ ժամանակին և երկրորդ Զօրաբաբէլ տաճարաշէն։ Ու Եաղուպ աղան ալ Երուսաղէմ ուխտագնաց ըլլալով՝ դարձին հետը Պոլիս բերաւ ու Պոլսոյ Պատրիարքութեան աթոռը նստեցուց Նալեան Սրբազանն՝ ըստ թախանձագին փափաքի այս վերջինին։

Կա՛յ Երուսաղէմի Վանքը ազնիւ յիշատակարան տախտակ մը, որուն վրայ մի առ մի գրուած են Եաղուպ աղայի բարեպաշտական ընծաներն ու յիշատակ-

1. Դարապատում հատ. Ե. 1789–1795 էջ 23–25։

նէրք՝ նուիրեալ միայն Ս. Յակոբայ տաճարին: Տալու համար առ հասարակ գաղափար մը ժամանակին նուիրական ոճին ու հարստութեանց որակին՝ կօրինակենք հոս այդ յիշատակարանը (Ժամանակագրական պատմ. Երուսաղէմի հատ. Բ, էջ 78):

Նուէրք Եաղուպ աղայի ի գանձս Ս. Աթոռոյն և Ս. Տեղեաց Քրիստոսի յԵրուսաղէմ՝ ի յիշատակ իւր և ազգատոհմին իւրոյ — 1 արծաթի ջահ 56 օքքայ՝ կախեալ ի մէջ գմբէթի եկեղեցւոյն Ս. Յակոբայ, և ի ներքոյ նորին կանթեղք 8. 1 մեծ և պատուական վարագոյր Աւագ խորանին ոսկեթել ասղնեգործ, յորոց վերայ անուանին կերպարանք վիշապաց. 2 ծաղկեայ ատլազ գոգնոց. 1 իւղաբերից շուրջառ. 1 Սոոֆա վարագոյր Ս. Գլխադրի, և որմոց նորին պատկերք անօրէնութեան փրկչին, գործ սքանչելի հանդերձ արծաթի շրջանակաւ և վանդակաւն. 1 արծաթ կանթեղ ի մատուռն Մակարայ Հայրապետի. 1 ոսկեթել թաւիշագործ (կլապիտոն. աթլազ ատզուման) վարագոյր, Ս. Էջմիածնի խորանին. 1 պղինձ ծորակ անաւազան, երկաթեայ արտաքին մեծ Դրան Վանուց: Ս. Յարութեան 1 ոսկի կանթեղ 600 դրամ ի վերայ գերեզմանին Քրիստոսի, 1 շուրջառ. 1 սաղաւարտ. 1 վակաս. Ս. Յովհաննէս եկեղեցւոյ՝ 1 լեհ չիթ վարագոյր. 1 ատլազ գոգնոց: Ս. Թորոս եկեղեցւոյ՝ 1 արծաթ ոսկեզօծ սկիհ. 1 ատլազ գոգնոց, Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյ՝ 2 ատլազ գոգնոց. 1 լեհ չիթ վարագոյր. 2 քարեայ աշտանակք մոմեղինօք: Ս. Փրկիչ եկեղեցւոյ՝ 1 ատլազ գոգնոց. 1 զոյգ քարեայ աշտանակ մոմեղինօք: Ս. Աստուածածնի գերեզմանին՝ 1 ատլազ գոգնոց, 1 սաղաւարտ, 1 վարշամակ, 3 շապիկ: Ս. Ծննդեան եկեղեցւոյն՝ 1 շուրջառ. 1 սաղաւարտ, 1 վարշամակ. 1 փորուրար. 3 շապիկ. 1 արծաթ բուրվառ: Ս. Նիկողայոս եկեղեցւոյն Յոպպէի՝ 1 շուրջառ 1 սաղաւարտ. 1 վարշամակ. 1 փորուրար. 4 շապիկ. 1 լեհ չիթ վարագոյր: Իսկ Եաղուպ աղայի բարեպաշտուհի տիկինը՝ Սողոմէ՝ յիշատակեց Ս. Յարութեան տաճարին մէջ կանանց վերնատանը՝ 2 ատլազ գոգնոց, 1 չիթ լեհ վարագոյր, Քրիստոսի գերեզմանին հանդէպ խաչելութեան պատկերի ոսկեզօծ շրջանակը քանդակագործ:

նաւորապէս երկու մեծ բաշաներու, որ հռչակ հանած էին։ Իր վաճառաքարձ նաւերը կերթեւեկէին Ռուսիա և Խրիմ. քանի տարի այսպէս շարունակելով՝ դիզեց մեծ հարստութիւն և ապա սկսաւ նուազիլ և իյնալ։

Այդ առաջին անկումէն ետև՝ նորէն կանգնեցաւ օգնութեամբ իր եղբայրներուն՝ վերստին իյնալու համար, մինչև որ՝ մղեալ արկածներէ ու հիւանդութիւններէ՝ գնաց Սինոպ և անտի Եանեա, ուր բաշային պաշտպանութեամբը գիւղի և տունի մը տէր եղաւ։ Եւ ապա դարձեալ Պոլիս դառնալով կրցաւ զբաղիլ իր հին գործերով տարի մը համար, մինչև որ բախելով մեծամեծ վնասներու՝ միտքը դրաւ երթալ ապրիլ Ֆրանսա։ Հետզհետէ Վարշաւ, Պերլին, Վիեննա, Համպուրկ, Լոնտրա և ուրիշ քաղաքներէ անցնելով՝ 1823ին հասաւ Փարիզ։ Հոն՝ իր ամբաւ հարստութեանց նշխարներովը բացաւ արեւելեան անուշահոտութեանց խանութ մը՝ պալէ րօյալին ի մէջ, մինչև որ հրոն ալ կրակ մը պատահելով մոխիր դարձուց Կարապետին վերջին հանգրուանը, այնպէս որ եօթանասնամեայ հայ Յոբն հարկադրեցաւ գիշերօթել ճամբու մը վրայ։

Վերջապէս ֆրանսացի երեւելի բարեկամ անձնաւորութիւն մը՝ վրան գթալով հանգանակութեամբ անոր ապաստան ճարեց և խանութ մըն ալ դնեց Պուլըվառ տը Բօննուվէլի վրայ, ուր անկեալ ծերունին կապրէր՝ ծախելով դիւրագին բաներ։ Հոն ալ սակայն հալածեց զինքն անողորմ վճիռը՝ զի օր մը ամբաստանուեցաւ արգիլեալ ծուխ ծախելու յանցանքով և դատաստանի քաշուելով՝ հազիւ կրցաւ արդարանալ և ազատիլ տուգանքէ։ Իր փաստաբանը Տիւբլանէի գրեց վերոյիշեալ իր վարքը։

Եւ Կարապետ՝ ա՜լ վերահասու եղած իր ճակատագիրին դժնէութեան՝ որոշեց քաշուիլ Արշիպեղագոսի կղզիներուն մին՝ հանդերձ իր ընտանիքովը, ու ապրիլ հոն վերջին փիլիսոփայութեամբ մը։

* 1780ին կը յիշուի Պոլղարանցի մահտեսի Յարութիւն ամիրայ. որ էր Սարաֆլար քէհեասի և ամենէն ազդեցիկն հանրային գործերու մէջ։

1782 օգոստոսի առաջին օրը սոսկալի հրդեհ մը 66 ժամի մէջ մոխիր դարձուց Պոլիսի մէջ հազարներով

տուն և կխղեց այրեց հազարէ աւելի մարդ։

1786ին կը յիշուին նոր Ջուղայեցի ազնուատոհմ Մանիչարեանց, որոնցմէ հասած են գրասէր մարդիկ։

1789ին Պոլսոյ մէջ տեղի ունեցաւ սոսկալի տեղատարափ մը, զոր այսպէս կը նկարագրէ՝ ժամանակին ոմն՝ Հ. Ղուկաս Ինճիճեան Մխիթարեանը1։

«Այս տարի Սամաթիոյ մէկ ալեկոծեալ տարի մը եղաւ. երկինքէն մէկ հեղեղ (սէլ) մը եկաւ որ չիկար ծեր մը անանկ սաստիկ անձրեւ յիշող. երկու օր անձրեւային եղաւ, բայց մէջը մէկ անձրեւ մը եկաւ ժամ ու կէս քշող անանկ չառ որ լման պղտիկ. Ջրհեղեղ մը երեւցաւ մեզի. Սամաթիոյին համբաները անանկ բարձրըցան ջրով որ տեղ տեղ մարդիկ չի կրցան անցնիլ, տեղ տեղ ալ անանկ խորունկ փորեց որ՝ գետնի տակէն հնուցմէ թաղած գերեզմանի քարեր երեւան հանեց. Գասըմ փաշան տուներ՝ տէխրմէնի քարեր քակեց ծովը տարաւ։ Պօղազ իչիին ան գեղերը որ ձորի (տէրէի) մէջ են՝ տուներուն բարձերը, ֆըչիները, սեղանները և այլն ծովը քշեց տարաւ. Խանտիլլիին ջուրի համբուն մէջը քշելով խօթելով կով մը՝ անանկ հրելով ծովը տարաւ, տեղ տեղ ալ ան համբուն ամուր պատերը պատռեց որ սուլդան Մուրատէն են շինուած. Պէպէքին ձորին մէջը ծառեր քշելով իրարու վրայ դիզելով մէկ պատուար (պէնտ) մը շինեց, ու ծառերուն վրայ ջուրը արգիլուելով բարձրըցաւ, բարձրութենէն վար վազելով ջուրին սաստկութիւնը ինչ հռոմի գերեզմանի քարեր որ կային՝ ծովեզերքը քշեց տարաւ, տուներ փլուց, լեռան հողը վար բերելով չարչին հողով լեցուց. խանութները վարը խորունկը թաղցին, տախտակները խուլահի չափ խանութներէն բարձր թաղցին։ Կէօքսուին ամէն պարտէզներէն որ 4 ժամ ներսէ ներս կը քշէ՝ իրենց ամէն բերքը ծովը քշեց տարաւ. Ջէնկէլ գեղին ծովածոցը լեցուած կերեւնար քշուած կանանչեղէնով, ծառերէն հանած բարձերով։ Ամէն մէկ տեղին պատահարները ինչ որ տեսանք աս սոսկալի անձրեւին սաստկութենէն եղած՝

1. Դարապատում հատ. Ե. 1789–1795 էջ 11-12։

թէ որ պատմելու ըլլանք՝ մէկ գիրք մը կ'ըլլայ[1]. ամմէնուս վրայ անանկ ահ մը պատել տուաւ աս անձրեւին սաստկութիւնը՝ որ իբր թէ գետինը անցնելու կը ցըցնէր աս ամբողջ քաղաքը»։

# Ե.

Ժամանակին հետեւակ մակարդակէն բաւական բարձրացած ու մեծցած ազնուականութիւն մը կելնէ նոր մեր դէմը՝ տասնեւութերորդ դարին վերջերը, նշանաւոր դեսպանական մը՝ թէ՛ իբրեւ գրագէտ թէ՛ իբրեւ Չելէպի կամ Ամիրայ, Մուրատճան[2] ըսուած պոլսեցին,

1. Տե՛ս որչափ որ գրեց ինք Ամարանոց Բիւզանդեան գրքին մէջ թղթ. 207։

2. Մ. Յովհ. Հիսարեան (տե՛ս ԲԱՆԱՍԷՐ ամսական տետր տպ. Պոլիս 1851ին. հատոր Ա. էջ 14-15) կը գրէ այս անունը Մուրատճա տ'օհսոն։ Դարձեալ՝ ըստ Բանասէրին՝ Իգնատիոս Մուրատճա տ'օհսոն ծնած է ի Պոլիս 1740ին թոսունեան ընտանիքէն. իր հայրն՝ Զմիւռնայի շուէտական հիւպատոսն էր, որ տուաւ իր այս զաւակին արեւմըտեան ընտիր կրթութիւն մը։ Մուրատճա՝ իր համբոյր բնաւորութեամբն և իւլէմայի մը օգնութեամբ ստացաւ արեւելեան լեզուներու և պատմութեանց վրայ մանրամասն ծանօթութիւններ. ու 1782ին եղաւ Շուէտի դեսպան, և 1787-1790ին հրատարակեց իր պատկերազարդ Ընդհանուր պատկերին Օսմանեան կայսրութեան առաջին մասը։ Մեռաւ 1807 օգոստ. 27ին իր Պիէվրի տունին մէջ. իր զաւակը՝ Կարոլոս Մուրատճա ասպետը, դեսպան Շուէտի ի Պրիւսէլ՝ շարունակեց իր ընդհատած գործերը, և հրատարակեց Պատմութիւն Մողոլաց՝ 1824ին և Սեւ ու Կասպից ծովերուն Հիւսիսային երկիրներու վրայ ի Ժ. Դարու, 1828ին։

որ քաջ Ֆրանսագէտ ալ էր և ըրաւ հեղինակութիւններ ֆրանսական լեզուով Օսմանեան պետութեան պատմութեան վրայ (տպ. ի Փարիզ 1784) ու տեսաւ ի փոխարէն հայասէր Սուլթան Սելիմէն մեծ պարգեւ։ Ինք այս Մուրատճանը՝ գնացած էր նաև 1792ին Վենետիկի վանքն և հոն ալ բանտարկուած էր։ Իր հրապարակային ու մատենագրական վերջին անունն էր՝ Ասպետ Օսոնի և այս է պատճառն՝ որ Եւրոպացիներն յոյն կանուանեն զինքը։ Այս հայ ասպետն՝ եղաւ նաև Թարգման Շուէտական դեսպանին և տեսաւ, Շուէտի մէջ, Օսոնի ասպետութեան այդ տիտղոսն ու պատիւը, ուրկէ իբրև լիազօր դեսպան եկաւ Պոլիս։ Պոլսէն դուրս մեռած է։ Չափազանց յարած գրելու կարդալու՝ դեսպանական ու պաշտօնական գործերուն մէջ անգամ՝ օրն ամբողջ եօթը ժամ՝ կը զբաղէր գրականութեամբ. արժանիքով՝ Երեմիա Չէլէպիի պէս, իսկ պաշտօնով՝ անկէ շատ վեր անձնաւորութիւն մը[1], որուն անունը յիշուած է նաև Երևելի արանց եւրոպական բառգիրքերու մէջ։

Գրագէտ ամիրայ մըն էր Մարգար Խօճենց Զաքարեան ալ, որ պատմութեանս միջոցին Պոլիս գտնուելով՝ Պէյօղլուի գերեզմանատունին մէջ տօն օր մը ունեցած է հռչակաւոր և իմաստուն զրուցատրութիւն մը ժամանակին Անատոլու-Գաղաակերին հետ՝ Երրորդութեան վրայ, որ արձանագրուած է Սիոն Երուսաղէմի հանդէսին մէջ։ Ունի Հոգեշահ բանից կօշկոտէր մը տպեալ՝ առ իւր որդւին և առաջին թարգմանութիւն մը Տնկեմտոյ Արքնածի ին՝ տպագրուած նոր Նախիջեւան՝ ընդ հովանեաւ երջանկահանգիստ Սարգիս Խոջամեանց 1793ին։ 1799ին կը յիշուին՝ Բրնկեանցի մահտեսի Պետրոս ամիրայ Ադրիանուպոլիսի մէջ, ու իր որդիները՝ Պաղտասար, Յովհաննէս, Խաչատուր, որ տպագրել տուած են Սիւնեցիին Ադամ Գիրքը, հիններուն լաւագոյն տաղաչափեալ քերթուածներէն։

Ռուսիոյ մէջ ալ՝ 1789ին ծնած էր Խաչատուր Լազարեանց, Ռուսիայի պետական խորհրդական, որ նուիրեց իր նախնեաց հիմնած Լազարեան ճեմարանին մե-

1. Դարապատումէն ու աւանդութիւնէ։

ծաղկանոկ գումարներ. վախճանեցաւ բարւոք ծերութեամբ 1871ին Բեռլէրպաղուրկի մէջ։

1790ին Մատրասի մէջ կը փայլէին կարգ մը հայ մեծ տուներ, որոնց մէջ էր նաև Շահամիր Ս. Շահամիրեան, որ տպել տուած է Աղեքսանդր Մակեդոնացիի պատմութիւնը։ Այդ միջոցին գործեալ նշանաւոր է Մանուկ պէյ Ռուսճուկցի, որ փայլած է տարաբնոյ կարգի թեւարկութիւններով։

1799ին առաջնակարգ հայեր էին՝ ի Պոլիս՝ Աղնաւորեան Գասպար, Տաղէսեան Յովհաննէս, Լիմոնճեան Յովհաննէս և Յիւլլապեան Յակոբ աղաները։

1800ին կը յիշատակուի Ղրիմեցի Աղայեկեան Եաղճի Գէորգ՝ Թարգման Ռուսի դեսպանատունին, որ աշխատեցաւ Կաթողիկոս ընտրել տալ Յովսէփ Եպիսկոպոս Արղութեանը։ Նոյն թուականներուն յիշուած են ի Գանձակ Արլուեցի Տայիրեանք, որոնց սերունդը բնակեցաւ 1842էն ասդին ի Տփխիս. կը համարուին Օձնեցի Յովհան իմաստասէրին տոհմէն։ Այս սերունդին վերջին նշանաւոր անդամն եղած է Ստեփանոս Տայիրեանց։

1780էն մինչև 1825՝ կը յիշուի նաև ժողովրդասէր Մահտեսի Աբրահամ ամիրան1, որ տպել տալէ նաև

1. Իբր հայրական և հանրական ալ պարագայ մը՝ ներեն մեզի հետաքրքիր ընթերցողներն յաւելուլ հոս, որ Ակնցի տպագրասէր այս ամիրային եղբայրն էր հաճի Նրամ բարեսէր անձնաւորութիւնը՝ հայր Նրամեան Կարապետ ու Գէորգ Պէյերուն, որ այս վերջինն ալ՝ էր հայր Բարձրապատիւ Աբրահամ փաշային։ Այս հաճի Նրամ աղան ևս կը բնակէր Սամաթիա՝ ատենին հռչակաւոր կեդրոնը, և Մրմըր զատէ Յակոբի (մեր հօր կուսէ պապն ու Մրմըր Տէր Աբրահամ՝ Սամաթիայի վաղնջուց աւագերէց և Աւետիք պատրիարքի մօտիկ ազգական աղօթամրմունջ «Մրմըր» քահանային թոռան թոռը) նաև Գոյումճը Ղազարոսի հետ թաղին համերաշխ երեսփոխաններն էին. երեքը միասին ընտանի մտերմութեամբ կը հաշուեն որ 1816 Ս. Գէորգի տօնին շաբթուն՝ երեքն ալ

իր ծախքովը շատ գիրքեր՝ բացաւ ալ ի Պոլիս Հասան փաշա խանը տպարան մը իրեն սեպհական. ժամանակին մամուլէն՝ կրօնական ու պատմական գիրքերուն մեծ մասն ելած են այդ խոշորագիր տպարանէն։ Ասոր հայրն է Թեոդորեանց Սարաֆ Հաճի Օհան աղան՝ մինչա ակընթի։

Ասոնցմէ զատ կան նաեւ չարաակիրգքիկ՝ 1780–1810՝ դպրոցապէն Մխիթարեան Շնորհք ամիրաները, որ նը-պաստած են Ս. Յարութիւն եկեղեցիին քովի հիւանդանոցին հիմնարկութեան (1794)։ Փափազեան Սի-մէոն ամիրան, հայր նշանաւոր Ճանիկ յաղթանդամ ու յաղթագրամ ամիրային և Մուրատ ամիրայ Սուրէնեան։

Կեսարացի նաև կօշկակար տղայ դարձած՝ Պաղտասար Ա. դպիր յորջորջուած Պատուելիէն եաքը, որ Էջմիածինի

մէյմէկ նոր զաւակի տէր պիտի ըլլան, ուստի, ուխտ կը դնեն որ յղացուած երախաներուն երեքին ալ անունն առ յիշատակ Գէորգ դնելով՝ նուիրեն անոնք հանրական ծառայութեան: Սակայն Ղալաթիայի անհանդարտ այն մարդը, Գույումճը զատէ Ղազարոսի որդին, յառաջադիմարա՛ր երկու շաբաթ առաջ կը ծնի, ու հայրն ալ՝ այս պատճառով կը յայտարարէ իր ընկերներուն թէ պիտի աւրէ իր ուխտը, քանի որ Աստուած կը կանխէ, տասն և հինգ օր առաջ տալու իրեն զաւակը. մկրտելով անհամբեր երախան ալ՝ իբրեւ Քրիստոսի արագուքը՝ անունը կը դնէ Քրիստոստուր, հռչակաւորն այն Ղազարոսեան Քրիստոստուր էֆէնտին: Իսկ հանի Երամ աղայի և Մրմըր զատէ Յակոբի ժամադէտ երախաները՝ ճիշդ ուխտեալ ժամուն, Ս. Գէորգի շաբթուն, 1816ին աշխարհ գալով՝ կը մկրտուին երկուքն ալ Գէորգ անունով նոյն Վարագայ խաչի կիւրակէին – մին Երամեան Գէորգ Պէյ սեղանաւորը, միւսն հանգուցեալ (1873) հայրս՝ Գէորգ Մրմըրեան, երկուքն ալ երրորդին Քրիստոստուր էֆէնտիի հետ՝ կ'ըլլան այսպէս յորովայնէ ընկերներ: Զայս այսպէս պատմած է ինծի ինք Քրիստոստուր էֆէնտին աւանդաբար:

նոյնքան գործնականօրէն ալ վեց մեծ լեզուներու (յու-նական, եբրայական, ասորական, արաբական; լա-տինական ու հայկական), որ ամբողջներուն չափ գլուխ ծանր մարդ ալ չէ եղեր, ու Պալաթի Հրեշտակապետ եկեղեցիին քովընտի մէկ սենեակին առանձնական բու-սակեր ներանձնութեամբ մը՝ բանասիրին է տարբերե-րով, օժտելով տասն և հինգ հատորի չափ հմտալից գործերով (գլխաւորները՝ պարսկահայ բառարան, եբրա-յականէ թարգմանութիւն մը Սաղմոսի, Աստուածա-բանական հատորներ, Արաբերէն ձեռագիր քերակա-նութիւն մը գրաբար բացատրութեամբ, արաբականէ թարգմանուած աստղագիտութիւն մը և այլն) տոհմային վերջ բանասիրութիւնը, մինչ Վենետիկի Հ. Արսէն Բագրատունին դեռ աշխարհ իսկ չէր եկած․․․ Պէշճեան Ճշգագրին տուած է այս անձին քանի մը գործերը, և մեզ շատ ուրիշ պատահած ենք իր կոնդակ ու կարեւոր ձեռագիրներուն: Ա՛ն ալ իր ժամանակի գրագէտներուն ամիրան է եղեր, որ Պալաթցի ըլլալուն համար՝ կը-տորագրէ եղեր Գէորգ դպիր Պոլսեցին: Գէորգ դպիրին մէջէն ձախէն զոյգ կ'ընթանան՝ Մելքիսեդ դպիր և Յովհէնց իմացուցանէր ընտանի՝ հաւանաբար հայ-հոռոմ, որ թարգ-մանած է՝ ի մէջ այլոց յունականէն վարդապետ տօնեցին ըսուած (ձեռագիր) կարեւոր գիրք մը, և Սարգիս դպիր Յովհաննէ-սեան՝ որ գրած է Կ. Պոլսոյ վրայ հետաքրքրական տե-ղեկագրութիւն Բիզանդէն մինչև իր օրերը պատմական անկիւններով, որուն ոճը կոկիկ և լեզուն պարզ եղուն գրաբառ մըն է. Պալաթի այս հմտասէրներուն թի-կունքն էին Ղազէզ Արթին ու Հովուեանց Մարտիրոս՝ Թոռն Ապուչեխցի արդիւնաւոր հօճայ Յարութիւնի*: Իրենց յաջորդներին այս դարուս՝ Գրիգոր Փեշտըմալճեան և Զամուրճեան, որ ապա (1837ին) Տէրոյենց կոչուեցաւ:

Պատմական է նաև 18րդ դարուն վերջերն Ակնեցի Զօփէնց մահտեսի Աստօն ամիրան, որ Երուսաղէմ գացած էր մեծ վէզիրին հետ և Մեծն Նաբոլէոնի Սուրիական արշաւանքներուն առեն Պաղեստինի տե-

* Ձեռագիրք Վ[illegible] [illegible] Սամուէլ Րաֆֆիին էջ 1 և 92:

ղացիներէն հայերուն և Երուսաղէմի վանքերուն կրած վնասները թեթևցնելու համար՝ Պետրոս Երուսաղէմի Պատրիարքին խնդրքով միջնորդ եղաւ տեղւոյն մեծ Բէհաչխին և Յակովբեանց Միաբանութեան։ Զօփենցի հետ կը յիշուին նաև Մատէնի Ստեփան և իր ընկերը Փիլիպպոս ամիրաները։

---

## Զ.

Ամիրաներուն ծագումն՝ իրենց նշանաւոր պատրիարքներովն ու կցորդ դրագէտներովն և դպիրներով՝ կը հասնի այս տարտամ գիծերուն հետ մինչև 1800 թուականն, մինչ իրենք կը սկսին առնուլ աւելի գործօն աւելի վառ դիրք մը անձնական ու հանրական կամ, ըսենք, այսպէս կերևին ժամանակի մերձաւորութեամբ։

18րդ դարու ամիրաներն ընդհանրապէս աւանդական պարզ մարդիկ եղած ըլլալ կը թուին․ յիշատակարաններն ու աւանդութիւնն և տոհմին նախապետական վիճակն ալ կը ցուցնեն՝ որ անոնց մէջ պակաս չէին եղեր դպրոցասէր ու եկեղեցասէր մարդիկ․ ընդհանրապէս մահատեսի են եղեր անոնք, ընդհանրապէս բարեհոգի ու երկիւղած (pieux) թէպէտ անուսում թէպէտ ըստ ամենայնի անոճ ալ, այլ խորագէտ և ոճովն իրենց գործին և տունին՝ շրջավայրին ներած ու ներգործած արևելեան համեմատութեամբը։ Իրենց բնակութեան տեղերն են եղեր առ հասարակ՝ Սկիւտար․ Օրթագիւղ, Հասգիւղ, մերթ Սամաթիա, Պալաթ, Գում-Գաբու կամ Եէնի Գաբու և ուր որ նշանաւոր եկեղեցի մը կամ հայ բազմութիւն մը կը գտնուի։

Գալով ուրեմն այսպէս ներկայ դարուն սկիզբը՝ ճարտարապետ, արհեստապետ, մանաւանդ սեղանաւոր ամիրաներուն՝ ընդհանրապէս ակընցի՝ կառնեն որոշ ուղղութիւն և կը շողան յատուկ փայլով՝ մանաւանդ երջանկայիշատակ Սուլթան Մահմուտ Բ․ի և Սուլթան Ապտ-իւլ-Մեճիտի օրերուն։

Անոնք ալ կը սկսին Տէրութեան և Եղեշխաններու հետ ընել մեծ գործառնութիւններ՝ հաղորդակցութեանց, գիւտերու, շոգենաւներու տակաւ յառաջացիմող դիւրութեանց արագութեան չափով՝ արագ արագ կրկնապատկելով իրենց ազդեցութիւնը դիւրութիւնն և հարըստութիւնը․ արեւմտեան գաղափարներու և ոճերու նախնական աղօտ շփումը կը սկսի իրենց որդիներուն ձեռքով, և արեւելեանէ ու արեւմտեանէ խառնուրդ միջին կենցաղ մը, արուեստագիտութիւն մը, կառավարելու և կառավարուելու տարազ մը յատուկ՝ մարմին կ'առնէ հետզհետէ, որուն քաւական ալ կ'ընդդիմանան հիներէն մնացած ամիրաները և որուն մեծապէս կը նպաստեն Վենետիկի կիրթ վերապատուելիներն ու Պոլսոյ հռոմէական հայերուն երեւելիները։ Ասոնցմէ քաւական զատ՝ Ջաստեանց — Տատեանց Տունը՝ կը ճանչցուի իբրեւ Վառօդապետ Տէրութեան ու Պալեանցն իբրեւ ճարտարապետ արքունի, առաջինն հարիւր քառասունի մօտ, իսկ* երկրորդին երկու հարիւրէ աւելի տարուան ընտանիք մը, որուն յայն ժամու ներկայացուցիչն էր Գրիգոր ամիրայ Պալեան, բարի ու ղողո մարդը։ 1790էն մինչեւ 1830 փայլող և փայլեցունող մեծ ամիրաներէն մին եղած է այս Պապա Գրիգոր ամիրան Պալեան, որ իր նահապետական պարզ մարդասիրութեամբն և ուսումնասէր հնարագիտութեամբը սիրելի եղած էր թէ Օսմանեան վեհապետին աւագանիին թէ հայ պատրիարքներուն մեծերուն և ժողովուրդին։ Իր ճարտարապետական ձեռնկալուն եղած է իր հայրը Մակար խալֆան, ինչպէս ինք ալ շատերուն, մանաւանդ Ղազէզ Արթինին ձեռքէն բռնած է և ներկայացուցած է զայն Օսմանեան վեհապետին՝ ի-

* Պալեանց նախահայրն է Գարամանի Պելէն գիւղէն Պալի խալֆա՝ 1682ին Պոլիս եկած, որ ապա Բաբերդէն սերունդ ունեցած է Գրիգոր խալֆան, ինք մեռած է 1725ին, իր որդին է Մինաս խալֆայ՝ մեռեալ 1730ին, անոր որդին Մակար խալֆա՝ գործունեայ և հանճարեղ ճարտարապետն որ՝ ի մէջ այլոց շինած է Նուրի օսմանիէ մզկիթը․ ասոր որդին է պապա Գրիգոր խալֆան։

իր ընտանութեան պատուին համար զոհուած է եղեր արդիւնաւորապէս կերպով մը զեղչեցող տոհմակներու և իր ծերութեան օրերուն կեանքի ժամերով մաքի կ'ընէ եղեր։ Պատահարով մը գող կենկելով կաթուածահար վախճա-նած է 1823ին։

Երկհամբոյր և աշխատասէր ալ մէրդ՝ շատ կիւ-րակէ իր Պաղլար Պաշըկի ընդարձակ այգիին մէջ խնճոյք կու տայ եղեր իր ստորադասալ բանուորներուն և անոնց պետերուն՝ հաշտեցութեամբ և զուարթ բա-րեկամութեամբ սփոփելով զանոնք։ Ժամանակին ջոջ և հաստ հայերը, նոյն ինք Ղալէզ ադայ, շատ բան կը պարտին Պալեան Գրիգորի, 19րդ դարին սկիզբի առաջին ամիրային։ Ի՞նչ հիմը դրած է այն համբաւին ու հա-րուստ աղնուականութեան, որ այսա պարծանքն եղաւ իր որդիներուն և հարստարարութեան թոռներուն։ Իր մեծ թոռը՝ Նիկողոս պէյ Պալեան՝ իր բնաւորութեանն ու բարքին մանրանկար վերկենդանում մըն է եղեր, կ'ըսեն. վերկենդանում մը՝ վարդի նման վաղորդայնի մը չափ նշուլելով . . . Ծնած էր 1825ին. շինած է Տոլ-մա-պաղչէի Սերային հոյակապ Տիվան խանէն, քանի մը Գեղեցիկ քէօշկեր, Պոլսոյ նոր Խանկընքէօշկիւն ու լայնատարր Ղալաթա Սերային։

Գրիգոր ամիրայի անմիջապէս յաջորդած է՝ իր գեր շատ երիտասարդ որդին Կարապետ խալֆայ, երկիւղած ամիրան։

19րդ Դարին սկիզբները կ'ըսկսին պետուն հանել՝ ի Յուսաւորչեան Թամամշեանք, Արծրունեանք, Խերուդի-նեանք, Թայիրեանք ու Մանուկեանք*, ինչպէս վերջերը Մանդալչեանք եւայլք։ Աստրախանի մէջ ալ երևելի են նշանաւոր վաճառական աղայ Դանիէլ Սարգըսեան, որուն հարստութիւնը կը հասնէր 7 միլիոնի։ Ասոր որդիներն ալ Գրիգոր և Մկրտիչ՝ նշանաւոր եղան իրենց բարեգործութիւններովն և հարստութեամբ։ Նոյն քաղաքէն անուանի էին նաև Գաբրիէլ Աղաջանեանց և Ջանօմ Սահփանեանց։ Աստրախանէն է նաև պարոն Աղապապեանց որ կառուցած էր գիւղոց մըն ալ և իր

* Ճանապարհորդութիւն Սարգսի Սանանճեցւոյ Ջալալեանց։ Մասն Բ. էջ 56–75

ծախքովը կ'ուսանէին հոն 12 աշակերտ՝ վարժապետութեամբ պոլսեցի Սերոբէ Պատկանեանի։ Հռչակուած է նաև ջուղայեցի աղայ Յօհանջան մըն ալ։

Գրիգոր Խալֆայի ժամանակակից հռոմէական հայերուն մեծատուններէն հինգ վեց ընտանիք ալ կանուանին մերթ ամիրայ և ընդհանրապէս չէլէպի կամ հօճա, որոնք հետզհետէ, մանաւանդ Ադրիանուպոլսեցի Պօղոս պատրիարքի օրերը, Լուսաւորչականներու մերձիկ գործակցութեան մը միտումները կիրականացունեն։

Օրինակի համար Գրիգոր Չէլէպի Տիւզեան 1, Կանեցի Մաթէոս Չէլէպի մահտեսի Աստուածատուրեան, Թընկըր զատէ Յակոբ, Տիւզ-Յակոբ Չէլէպի՝ պրատէր ու հանճարեղ ազնուական մը. Վենետիկի Մխիթարեանց մարդը՝ որ տպել տուած է Հ. Արսէն Բագրատունիի քանի մը երկերը. Մկրտիչ Չէլէպի. Գըլհը զատէ Անտոն և Չէմպէրէկճի օղլու։ Ասոնք են որ վերոյիշեալ Պօղոս պատրիարքի գումարած աստուածաբանական ժողովին ներկայ գտնուած են, իրենց քանի մը վարդապետներուն հետ, հռոմէական հայերուն կողմէն առ հասարակ. իսկ լուսաւորչականներու կողմէն՝ իբրև պատուիրակ ներկայ եղած են գլխաւորապէս Ազնաւուրեան Կարապետ ամիրայ, Յովհաննէս ամիրայ Արիստակէսեան, Մահտեսի Յովհաննէս Չէլէպի, Մահտեսի Յակոբ ամիրայ Լաթիֆեան, Գրիգոր ամիրայ Պալեան, Գասպար ամիրայ Չարազեան, Գրիգոր ամիրայ Սագայեան, Մկրտիչ Ամիրայ Արփիարեան, աղայ Պօղոս Մարգարեան, Ճանիկ ամիրայ, Մահտեսի Պօղոս Կէլկէլեան, Յակոբ Մանանեան, Մահտեսի Աստուածատուր Ղօնչէկիւլեան, Յարութիւն աղայ Նորատունկեան, Մկրտիչ Աշնան, Մահտեսի Յարութիւն Բինկեանցի, Մարտիրոս Սագայեան, Բարունակ ամիրայ, Շնորհքեան Մանուէլ, Մանուէլ աղայ Քէրէստէճի (հայրն Յակոբիկ աղայ Մանուէլեանի, որ անօրէնն էր Ճեմարանի և պրաշէտ ու Տէրոյենցի խումբին ալ թիկնակիցն էր)

1. Տիւզեաններն՝ իբրև հին ոսկերչապետներ ու վաղեմի վարիչներ փողերանոցին՝ եղած են Օսմ Ղազէզ Արթինի պաշտպան վարպետները։

Մինաս գաբաղհանեցի (մեր մօր կուսէ պապը). Յա-րութիւն Չելեպի Կիւլլապեան, Անդրէաս Չելեպի և այլ բազմաթիւ արհեստաւորականներ:

Գործոյս համեմատութիւնը չներեր յիշեալ ամիրաներուն և ամիրապետներուն վրայ զատ զատ տեղեկագրել. մանաւանդ որ լիակատար տեղեկութիւններ կը պակսին մեզի յաւիտենապէս, կամ զի անոնց սերունդներուն պատմածներն ալ՝ մեծ մասամբ՝ չենք կրնար արձանագրութեան մը չափ վաւերական համարել: Ուստի կը շատանանք շեշտելով միայն հոս՝ թէ ժամանակին ազդեցիկ ձայն և հնչուն գրպան ունեցողները սոանք են ընդհանրապէս, որոնց մէջ կան մինչև հարիւր տարուան գերդաստաններ, օրինակի համար Կէլկէլեաններն ու Սագայեանները:

~~~~~~~~~~

# Է.

Այս տասուածաքանակին երեք խումբէն քիչ մը ետքը կը հասնին՝ իբրև վերջին տրցակն ամիրաներուն՝ Պոլսեցի Ղազէլ Արթին հռչակաւոր ամիրան, Պալեան Կարապետ Ամիրան, Տատեան Յովհաննէս Պէյն ու Սերվէրեան Յովհաննէս աղան կամ ամիրան, որ քարի և փայտի վրայ քանդակելու եւրոպեան գեղարուեստը մտցուց հայերուն մէջ ու գլխաւոր սատարողն եղաւ Սկիւտարի հին ճեմարանին՝ մանաւանդ իր իսկ դրամովը ի հեճուկս Միսաք և Ճանիկ ամիրաներուն՝ որ, չգիտենք ինչ պատճառով, ուխտած էին կրսուրի՝ ախոռի վերածել այդ հոգետուն փարախը մուսաներուն: Նաև Երկանեան Յարութիւն և Փիշմիշ ամիրաները՝ Ղազէլի համբաւական գործակից, Յովհաննէս ամիրայ Աղնաւորեան, հանճի Մարտիրոս Պաղտասարեան, Մաղաքիա Սարիմեան, Պաղտասար Գասպարեան, Մահտեսի Յարութիւն Չելեպի Կէլկէլեան (մեծ հայրը Վսեմ. տօքթ. Խորասանճեան էֆ.ի), Յովհաննէս Բինկեանեան, որոնց մէկ քանին էին հին հիւանդանոցը հիմնողներէն ու վա-
~~~~~~~~~~

րողներէն[1], Յարութիւնեան ամիրայ, Միսաք ամիրայ, Տատեան Պօղոս Պէյ և Մկրտիչ ամիրայ Ճէզայիրլեան[2] պաշտպանն Զաւգիւղցիներուն և Շահնազարեան Կարապետ վարդապետին։ Տեղն է հոս նաև յիշելու Պետրոս ամիրայ Եուսուֆեանը (ծ. 1780 մ. 1846). Պօղոս Պէյ Եուսուֆ և, քաղաքական տեսքը, Նուպար փաշա, Թագւոր փաշա Ամիւնեանի ջոջերը, որ մեծ մասամբ Եգիպտական վառ գործին տակ ցինեցին իրենց քաղցն ու փառքն և կտակեցին իրենց ադամանդակուռ գործին[3]։

Ահա այս հանրագիծ ակնարկութիւններով և տեղեղուանքով՝ կը հասնինք մինչև 1835 Թուրքահայերուն ամիրայութիւնը, փաշայութիւնը և պէյութիւնը, մանաւանդ ամիրայութիւնն իբրև չէշտակալ դրուագանշան (titre) մը ժողովրդական՝ ի փոխարինութիւն կարգ մը անձնական կամ ժառանգական բարեմասնութեանց, առաքինութեանց, բարեպաշտական գործերու, նուիրատուութեանց, եկեղեցաշինութեանց և դուն ուրիշ ալ գիտութեանց կամ հեղինակութեանց։

Իրենց վրայ աւելի ներբողեալ ծանօթութիւններ առնել փափագողը կրնայ դիմել Օրթագիւղի, Բէրայի, Սկիւտարի ու Գալըթըայի հին տապանագիրներուն, որ մեծ մասամբ Եզեկեան Յովհաննէսի կամ Փեշտըմալճեանի՝ դարուս սկիզբի ամիրաներուն փիլիսոփային՝ գրչէներէն ելած են. անոնցմէ մաս մը օրինակուած ալ է Ղալաթիոյ Ազգ. Մատենադարանին Գ.րդ դարակին

1. Տե՛ս Պատմութիւն Ազգ. հիւանդանոցին, Բիւզանդ Քէչեանի։

2. Ասոր վրայ՝ քիչ մը վարն աւելի ընդարձակ գրած ենք։

3. Զմիւռնացիներուն մէջ Գ. Մուրատ Յարութիւնեանն ալ երևելի է, որ կը բնակէր Երուսաղէմի մէջ և բարեկամ էր Ս. Յակոբայ վանքին և միշտ կօգնէր անոր իր խորհրդովն և ազդեցութեամբ, մանաւանդ երբ Եուսուֆեան Պօղոս Պէյի շնորհիւ Սարտենիայի ու Նափոլիի հիւպատոսութեան հասնելով՝ ծոխացաւ թէ պատուով թէ՛ հարստութեամբ։ Իրեն կտակած է Երուսաղէմի վանքին բաւական կալուած։

են, Արեւելքի անցեալին մէջ, թէ՛ հանդէպ Տէրութեան թէ՛ հանդէպ հայ հասարակութեան, կարեւոր և հզօր դեր մը միայնակ՝ իրենց սահմանափակ ու տեղական հարստութեանց և իմացականին չափով: Անհատապէս ալ՝ անոնցմէ ամէնէն հզօրներն հարուստներն և միանգամայն վաղանցիկներն եղած են անոնք, որ ունեցած են կարծ՝ անատոլուական ծագում մը քաղաքային, և եղած են աւելի խորամանկներ քան խորագէտներ. ընդհակառակն անոնց ու պոլսական հասարակ էսնաֆին մէջ՝ ամէնէն խելացիներն արդիւնաւորներն ու իրենց միջակ դիրքին չափով տոկուններն եղած են անոնք, որ թէ՛ խորագէտ թէ՛ արուեստագէտ թէ՛ գիւղականցող կամ հին մայրաքաղաքացիներ էին, համեստ ու զատէ՛ խելացի օգտաւորներ քաղդէն և հարուստ պետութեան շնորհներէն և պաշտպանութիւններէն: Առաջինները՝ Անատոլուի արմուղ խորքերէն եկածնուն պէս, առանց իմաստասիրելու իրենց նոր և կիրթ շրջավայրը, առանց բանի տեղ դնելու ատարճանաւոր յառաջդիմութեան գերազանց բարիքը՝ համեմատութեամբ յանկար, ծակած յառաջդիմութեան՝ իրենց Պոլիս տեղաւորուած ու լայնցած ազգականներուն կամ բարձր պաշտպաններուն թեւարկութեամբ՝ իսկոյն վեր ոստնելով, վեր ու շա՛տ վեր, հոն. գլուխի բնական պտոյտներովը հանդերձ՝ յաջողած ալ են տիրանալու, առ իրանելի ժամանակ մի, մեծ փառքի, իշխողութեան (autorité) և հարստութեան՝ ինչպէս նաեւ անոնց անկարծութեան լծորդ մեծ ախտերու և կիրքերու, որպէս զի նոյն թափով և նոյն համեմատութեամբ իյնան վար՝ կչռուած ժամուն՝ վար, գահավիժաբար վար՝ ու կորուսին անհետ, կտակելով իրենց սերունդին վրա անուն մը քովկը՝ մեծատունի գժուար թշուառութիւն մը:

Իսկ վերջինները՝ այսինքն խելացի գիւղականցողները կամ Անատոլուի բանիրուն քաղաքացիները, օրինակ իմն կեսարացիները հին ու ազնիւ մայրաքաղաքացիներն և թերեւս ամէն անոնք ալ՝ որ գէթ Ակն քաղաքէն չէին ու իրենց համար ատարճանաւոր յառաջացում մը ընտրելու մասին աւելի համեստ ու իմաստուն էին, բաւականապէս տոկալ յառաջատելէ ետքը, զուտ իրենց արժանիքովը, խորագիտութեամբ

կեցած են հոն, ուրկէ անդին ա՛լ չէ զօրած իրենց տեսակ մը ինքօղնական ոյժը, և ըստ այդմ՝ իրենք ալ իրենց կարգին արժանացած են, Պոլիսցի բանիբուն միջակայիններուն հետ, մեծ ամիրաներէն շատ աւելի դիմանալու՝ իրենց դիրքին հաստատութեան և ազդեցութեանը մէջ։ Եւ ասոնք եղած են ընդհանրապէս՝ Պոլչ կոչուած արհեստապետները. ոսկերիչներու, Ղազէզներու և Պէզճիներու մեծերը, զարպխանեցիները ու մեծաքանակ վաճառողները։ Տգէտ այլ բանգէտ ամիրիկներու աղաներ, որ կենցաղելու արուեստին գիտուններն էին, գիտէին շահիլ և սիրաշահիլ ալ լրջութեամբ՝ թէպէտ չգիտէին մեզի պէս գրել, կարդալ, համել ու վիճել։



# Ը.

Ըստ այսմ՝ մեծ–նոր խանի, Վալիտէ խանի, Վէզիր խանի ամիրաներն՝ եղած են մեծ մասով ակնցի կամ ուրիշ քաղաքցի սեղանաւորներ (բաց ի Բաբերդէ, Եղնկայէ, Խարբերդէ, Կեսարիայէ ու Երեւանէ)· քիչերը վաճառական։ Եւ ասոնց իւրաքանչիւրն՝ իր քաղաքակիցներն այլամերժօրէն առաջ քաշելու և Պոլիսի հանրական իրողութեանց մէջ ազդեցութիւն և հրամայետութիւն վաստըկելու աշխատած են մինչեւ վերջ՝ խստանալո՛վ պահանջկոտ և անագորոյն դառնալով առ դրացին առ իւր համազգի օտար, և թուլնալով առատանալով ու ներելով ամէն արատաւորութիւն իրենին ազգականին կամ պաշտպանեալին և կամ իր կիրքերը փայփայող անարժանին.... իսկ թէ ակնցի թէ այլ քաղքցի՝ վառօղապետ, ճարտարապետ, հացավաճառ ու արհեստապէտ ամիրաներն՝ ունենալով այդ վերիններէն գործնապէս զատուցեալ գնացք մը և իրենց ճարտարարուեստական մասնագիտութեամբը՝ ըլլալով աւելի աշխարհամերձ աւելի խօսք հասկըցող, կը յիշուին բնականաբար զատ՝ ինչպէս հանրական գործելու մէջ ալ կը գործեն զատաբար, որոնց գործառնութիւններն ալ

ու կարողցան հիմնել Սկիւտարի հին Ճեմարանը, որուն ապա ոգւով չափ հակառակեցան սեղանաւոր Ակնցի-ներէն նախ Միսաք ու Ճանիկ և ապա Ճեզայիրեցի Մկրտիչ ամիրաները՝ լոկ հակառակելու համար ճար-տարապետականներուն, նաև առ առաւելն նախապա-տուութեան նախանձէ մը բռնուած։

1815էն մինչև 1845 փայլող սեղանաւոր մեծ ու փոքր ամիրաներու անուններուն և դասակարգութեան վրայ կառնենք հոս հակիրճ ծանօթութիւններ և ա-նուններ մը ձեռագիր այն տետրակէն, որն հաճած է ցոյց տալ մեզի հանգուցեալ վերջին ամիրայականի մը ազնիւ որդին. և այս տետրակն է որուն կակնարկենք ալ Ա.Գրայ+ անունով՝ մեր առաջին ծանօթութեանց մէջ։

Այդ դասակարգերուն բաժանորդ երեւելի անուն-ները կը յիշատակենք հոս, որպէս զի տուած ըլլանք արդի սերունդին՝ լի՛ գաղափար մը անոնց վրայ և ի-րենց սերունդին ալ՝ յիշատակարան հայելացում մը իրենց նախորդներուն, որոնց անունները պիտի կար-դան հոս պատմօրէն՝ թերեւս առաջին անգամ ու պիտի հրճուին պատուաւորութեամբ մը, և յետամնացներն ալ պիտի թելադրուին ի նախանձ լաւագոյն նմանութեան։

~~~~~~~~~~~~~~~

## Թ.

Սեղանաւորներու այս դասակարգը՝ կը բաժնուէր ե-րեք տեսակի, որ իրենց մէջ կը բաժնուէին նոյնպէս երեքի։ Առաջին բաժանումն էր՝ — Ալա, Էվսաթ, Էդ-նա. ու երկրորդ բաժանումը կամ ստորաբաժանումն էր այսպէս՝ Ալան կը բաժնուէր երեք կարգի, — Ա. Ալա, Բ. Ալա, Գ. Ալա. ինչպէս կը ստորաբաժնուէին նաև Էվսաթն ու Էդնան. — Ա. Բ. Գ. Էվսաթ ու Ա. Բ. Գ. Էդնա։

Ի սկզբան Ա. Ալէայէն էին՝ Խիւտավէրտի օղլու Նա-զարէթ ամիրայ, Բիշմիշ Միքայէլ ամիրայ ակնցի՝ իր
~~~~~~~~~~~~~~~

ճարպիկութեան համար այդպէս Բէշիկ (եփած) յորջորջեալ, և այդ ճարպիկութեամբ՝ փառն Թելջիլեր-Հ-պօղօս-Բինէ ամիրայութեան բարձրացած․ Կէլկէլեան Մահտեսի Չէլէպի, Երկանեան Յարութիւն ամիրայ[1], Քիւրքճի խանը Պետրոս, Տավուտեան Յովսէփ, Թընկըրեան Յարութիւն[2] (այս չորսը կը յիշուին եօթերը)։

Բ․ Ալէայէն էին (Քամմանտոյի ի հետ) Բարունակ աղայ, Բինկեանցի Յովհաննէս աղայ, Պետրոս աղայ, Ղազար աղայ, Մարգար աղայ, Միսաք աղայ և Մահտեսի Մարտիրոս աղայ[3]։

Գ․ Ալէայէն էին՝ Աղնաւորեան Յովհաննէս աղայ Ղազար աղայ, Տամատ Յովհան աղայ, Խորասանճը Յովհաննէս աղայ, Կիւզէլեան Յարութիւն, Թոփհանէլի Յարութիւն աղայ, Պաղտասար աղայ[4], և այլն։

Իսկ՝ Ա․ Էվսատէն էին Մաքսուտ աղայ, Նիկոլ աղայ (հայ հոռոմ), փափազ օղլու Խնդիր աղայ, Չերազըրեան Գրիգոր աղայ[5], որ հմուտ էր ասանկական ճարտարապետութեան․

Բ․ Էվսատէն էին՝ Ճանիկ ամիրայ, Մովսէս և Յովհաննէս աղայ, Ղոնչէկիլեան Մահտեսի Պաղտասար և Մելքոն աղայ, Ճեզայիրլի Սարգիս աղայ (հայրը Մկրտիչ ամիրային[6], Մահտեսի Երամ աղայ (հայրն

1․ *Ամիրայք, էջ 1։*
2․ » *էջ 7։*
3․ » *էջ 2։*
4․ » *անդ և 9։ Այս վերջինը թուի շինողն Նորոգութիւն Նկեղեցիին Բերայի։*
5․ *Ամիրայք, էջ 2 և 10։*
6․ 1851*ին Պոլիս հրատարակուած չնորհքով ամսական հանդէսը մը կը համառօտենք վերջին ամիրաներէն այս հռչակաւորին վրայ կենսագրական հետեւեալ տեղեկութիւնները՝ առանց երաշխաւորելու պատմական ստուգութիւնն այդ ծագումին, որ կրնայ ծածկալէս կրթըած ըլլալ կուսակցական կամ ծեռնտուութեան պատճառներու, վասն զի նոյն միջոցները ճիզայիրցիին ամէնէն փայլուն ատենն էր ու ինք մեծապէս կ՚օգնէր գրողներուն, մա-*

*Ամիրաները*

Երամեանց), Եօրչեան աղայ, Մանուկ Սաքսանեան Յովհաննէս աղայ։

Գ. Իշխանէն էին՝ Աշնան Պօղոս աղայ (մինչեւ 1880ը ազգային գործերուն կառաւած փոքրիկ Մերուկ մը), Միսաքեան Յակոբճեան աղայ, Եօրկի աղայ (հայ-հոռոմ)։

Եւ Ա. Իշխան էին՝ Բինկեանցի Խաչատուր աղայ, Էլմեան Մաթէոս աղայ, Միսաքեանեան Պաղտասար աղայ, Ղունչեկիւլեան Յովհան և Մարտիրոս աղայ, Մանուկ Սամսըրի աղայ։

Բ. Իշխան էին՝ Մոմճեան Նիկողոս աղայ, Եադըճեան Յովհաննէս աղայ, Տամաա Յովհան աղայ, էամէր

*Նաւանդ իր կողմի գրողներուն. դարձեալ նոյն միջոցներն ալ երկու կուսակցութիւն սաստիկ գայրացած էին՝ իրարու ի նեղուկս՝ մին Գալեանցն ու Տատեանցը միւսըմեզայիրցինն և իր կցորդսեղանաւորներունը:*

*— Մկրտիչ ամիրան կը կոչուի եղեր նաեւ ջովուեանց, և այդ ազգատոհմին ծագումը կը տարուի շատ հին ժամանակներ։ Այդ հին ազգատոհմին անունը մշտնջենաւորելու համար՝ իւրաքանչիւր տանուտէր ջանացիր է իր զաւակներէն մին անուանել հովիւ, և այդ ազգաքանութիւնն է որ կը շարունակուէր երեք դարէ հետէ որդի ի հորէ. աղոնց նախահաւերէն Գունեաթ կամ Գինեաթ անունով մեծ մը՝ պատճառով մը կու գայ հաստատուիլ Սեբաստիա և անժառանգ ըլլալով՝ կը յօժարի որդեգրել ազնուական ցեղէ մը Արծկէացի որբ պատանի մը՝ Գուղաւ կամ Ապուղամրի անուն։ քանի մը տարիէն կամուսնացունէ զայն, և քիչ մը ետքը՝ Ա. Սուլթան Սելիմին պարսկաստան արշաւելու ատեն՝ Գ. Գունեաթ կը քաշուի Ակնի երկիրը, ուր քաղաքին մօտ տեղ մը կը հաստատէ բնակութիւնք և այդ տեղին ալ անունը կը դնէ՝ իր որդեգիրին անունովը՝ Ապուղամրի. այս այն գիւղն է որ ժամանակէ մը ետքն ու հիմայ ալ կը կոչուի Ապուշէխ։ Գ. Գուղամի ծնած բոլոր զաւկըները անդէն խանձարուրքի մէջ կը մեռնէին բաց ի վեր-*

օղլու Պօղոս և Յովհաննէս աղայ, Ճիւմանեան Յակոբ աղայ, Սարաֆ աղայ, և այլն[1]։

Ու Գ. Էսայեան էին՝ որ կանոնաւորուէին եղբայր, Տարպինեան Մկրտիչ, Պանճեան օղլու Գէորգ (հայր՝ [illegible]) և Ատանօի եղբայր՝ իննսունեւհինգ[illegible]ամեայ Ծերունի մը (գիտ ողջ յՕրթագիւղ), Մարկոս և Կարապետ եղբայր, Խոճայ Զաքարիա, Ղուկաս եղբայր և այլն[2]. ու սոսնք քաղաքաթիւ էին, և կը նստէին

ջինէն որուն անունը դրին Հովիւ՝ ի յիշատակ Հովուեանց հին տոհմին.

Այս Հովիւն է երկրորդ նախահայր Հովուեանց գարմին, որուն ութերորդ թոռն էր ճեզայիրլեան այդ Մկրտիչ Ամիրան՝ ըստ այսմ — Գուղամ ծնաւ Հովիւը, Հովիւ ծն. Թորոսը, Թորոս ծն. Հովիւը, Հովիւ ծն. Սարգիսը, Սարգիս ծն. Թորոսը, Թորոս ծն. Սարգիսը, Սարգիս ծն. Յովհաննէս Ամիրան՝ Մականուանեալ ճեզայիրլի, Յովհաննէս Ամիրայ ծն. վերջին Սարգիսն Ամիրայ, որուն որդին էր, ինչպէս վերև գրած ենք, Մկրտիչ Ամիրա ճեզայիրլի, մեծահոգի և հանճարեղ, այլ անձնահաւան ու քիչ մը անխոհեմ ալ ինչպէս կ'ըսեն, որով յետին աղքատութեան մէջ կնքեց իր վերջին տարիները, և կտակեց յետին աղքատութիւն մը իր կողակիցին ու միւս մօտաւորներուն։ Բազմաթիւ երիտասարդներ իր օգնականութեամբը Եւրոպայի մէջ կրթուեցան, Հասգիւղի մէջ իր ծախքովը մեծ վարժարան մը հիմնուեցաւ և շարունակեցաւ քանի մը տարի, Մաքսի մեծ գործառնութիւններն ինք ձեռնհասաբար ստանձնեց ու տնօրինեց, երկրագործական ձեռնարկներու պաշտպան հանդիսացաւ, նաւահանգիստին մէջ նոր կամուրջի մը շինութեան գլուխ կեցաւ. իր առատաձեռնութիւնը և [illegible] չափ չունէր կ'ըսեն, որ վերջապէս գլխաւոր պատճառներն եղան իր արագ նուազումին և անկումին։

1. Ամիրայք, էջ 4։
2. » » 5–6։

ընդհանրապէս պզտի. Նոր–խան, Վէզիր խան, Քաչըքճի խան, որոնցմէ վերջերը մինչեւ առաջին Ալէային բարձրագոյններ ու ամիրայ բնակածներ անգամ կան:

Ասոնց չոլերէն ամենակարեւոր խումբ մը՝ համախոհութեամբ իրարու հետ եւ համահաճութեամբ պետութեան՝ հիմնած էր ուրուրեւս այն հսկայ ընկերութիւնը սեղանաւորական, որ երկու ճիւղի բաժնուելով կը կոչուէր Անատօլու եւ Րումէլի քումփանիասը: Առաջինը կը տնտեսէր ու կը հաւաքէր իր գործակատարներուն եւ հարիւրորդաւոր հաւաքողներուն ձեռքով Անատոլուի հարկերը, եւ երկրորդը՝ նոյնպէս իր գործակատարներուն եւ հաւաքողներուն ձեռքով Րումէլիի հարկերը, այնպէս որ ամբողջ Տէրութեան հարկերն եւ տուրքերը կը ժողովէին այդ ընկերութեան ձեռքով, որ շատ անգամ Տէրութեան ի հաշիւ այդ հարկերուն կանխավճարներ ընելով՝ կը դիւրացունէր անոր պիւտճէին առձեռն հաւասարակշռութիւնը, եւ ինք ալ լիով կը շահէր՝ ցորչափ իր հաշիւը գիտնար եւ լաւ պաշտօնէութեան մը ձեռքով տնտեսէր իր ընդարձակ գործը: Իր փառաւոր սկիզբին ու կազմութեան հակառակ՝ այդ հարկահաւաք ընկերութիւնն ալ չկրցաւ ընդ երկար դիմանալ, եւ հարիւրորդաւորներու վճարողներու, եւ այլն անկանոնութեան ու զեղծմանց երեսէն՝ նուազեցաւ ընդ հուպ եւ եղծաւ, տեղի տալով հետզհետէ նոր դրութեանց ու եւրոպական մեթոտով կազմուած պանքաներու եւ հաշուեկալներու:

Այս է աւասիկ վաւերական ցանկն ու գործառնութեանց տեսակը՝ Ամիրայ Աղայ ու Եղբայր սեղանաւորներուն, որոնց մէջ 1800էն մինչեւ 1850–55 գոյացած էր ու կը տեւէր տեսակ մը գործակցական համերաշխութիւն՝ հանդէպ պետութեան Եպարքոսին եւ միւս բդեաշխներուն: Իրենք ասոնց հետ միշտ կը կնքէին պայմանադրութիւններ ու կ'ընէին դրամական մեծ փոխանակութիւններ եւ առեւտուրներ:

Ունէին իրենց քեահեան (նախ՝ Երկաննեան Յարութիւն ամիրան, ետքը Ճանիկ ամիրան), իրենց արհեստապետական սենեակը, իրենց գործակատարները, գրագիրները, թեւարկեալները, թաղերն ու վարդապետներն եւ դպրոցները, նաեւ հարցարան քանդէտներն

ու պատուելիները։ Ունէին իրենց դիւղապետութեանց, ուխտաւորութեանց, խրախճանութեանց, հարսանիքի և յուղարկաւորութեանց յատուկ եղանակներն որոշեալ։ Ունէին դարձեալ իրենց սեպհական յառաջդիմական կամ յետադիմական կարծիքը, մատենադարանները, մատեանները, հագուելու շքուելու տարազները, հոժարա-փոյթ ընծաններն ու սիգաբեռն փափկամոլութիւնները։ Ունէին վերջապէս իրենց սիրած պատրիարքները՝ օրի-նակի համար «Աղաւնի» Ստեփանոս Պատրիարքը, Զուհաճեան Մատթէոս։ և փոքր ինչ Գէորգ Դ. կաթո-ղիկոսները, որ իրենց մէկ քանիին ձեռքով կաթողի-կոսացան՝ յուղարկուելով մեծափառ հանդէսներով Տփ-խիս և Էջմիածին. ունէին՝ անոնց հետ՝ իրենց սեպհա-կան ազնուապետական քահանաներն ու տիրացուները. ունէին դեռ շատ բաներ՝ իրենցը և միայն իրենցը։

Ամիրաներուն այս դասակարգին մէջ՝ կը յիշուին նաեւ քանի մը հայ-հոռոմներ, որոնք շատ կային Անատոլուի մէջ մանաւանդ. Անոնք չուրջ դիւ-ղերն ու մօտերը, Թուրի Եղր կաթողիկոսի առնէն ճանացած։ Այս Հայ-հոռոմներէն կային Բիւթանիոյ կողմերն ալ՝ մինչեւ 1850ը և կան ալ դեռ։ Պոլի-սի Հայ-հոռոմներուն մէջ յիշելի և ամիրապատի-ւոն էր՝ այս դարին սկիզբը Անաստաս Աղան կամ Ամիրան, երեւելի իր հարստութեամբն ու ազդեցու-թեամբ, որ հայ լեզուի թարգմանել տուաւ յունա-կան Եկեղեցիին արարողութիւնները[1] (իբր հայ՝ ազ-

1. Հետեւեալը՝ դուռն է այս Անաստաս ամիրային տպել տուած յունակրօն և հայալեզու մաշտոցին –

ՄԱՇՏՈՑ

Հատընտիր հաւաքմամբ հանեալ ի մեծ Մաշտոցէն յունաց որ կոչի

ԷՖԽՕԼՕԳԻՈՆ

Նորոգ թարգմանեալ և սրբագրեալ՝ աշխատասիրու-թեամբ Անաստասայ մեծ իմաստ վարժապետին յունաց և պատուելի Գրիգոր Դպրի Փեշտըմալճեան.

գով, և յոյն՝ կրօնքով), ինչպէս տասնեակներով դարերու ամբողջովին կատարած էր անձամբ այսպիսի թարգմանութիւն մը՝ հայ հռոմ Կարապետ Իշխան, որպէս կը գրէ Հ. Ղուկաս Ինճիճեան ի հատորն Ասիոյ։ Հայ-հռոմութիւնն ալ այսպէս. ազգին մէջ քանի մը հարիւր և աւելի հին տարիներու տարօրինակ երեւոյթ մըն էր՝ նման ամիրայութեան, և որդ երկուքն ալ՝ գրեթէ ոչ եւս են նմանաբաղդաբար։

Ժ.

Ինչպէս ակնարկեցինք վերերն ալ՝ այս ամիրաներէն բացառաբար դուրս կկենային՝ նախ մեծ ամիրան Ղազեզ Արթին, որուն պատմութիւնն՝ ազէկ մէջ՝ գրուած է մասնակի տետրակով մը, և հոս գործիս համեմատական չափը չներեր երկայնաբանել իր վրայ. ապա Տիւզեան և Ջարպհանէի միւս ճղերը, վառօդապետ Տատեանները, որոնց վրայէս կարժէ գրել առանձինն, հարստապետ Պալեանները, որո՛ց վրայ՝ կուզէինք որ գրէր ազգականութիւն չունեցող մարդ մը. Սէրվէրեան Յովհաննէս ամիրայ, նաև քանի մը հացապետներ, որոնց կարգէն էր՝ Նորատունկեան Յակոբ, Գրիգոր. Սիմէոն հայրերուն. վարպետը՝ էքմէքճի Պաշի Արթին անունով[1], որուն խորանն (փուլանճը) էր այժմեան Պեր-

«Ջանիւ և արդեամբ բարեպաշտօն և աստուածասէր Սառաֆ Անաստաս աղայի, որ ի Սուրբ Գէորգայ վանից գիւղէն Ակնայ քաղաքին»։
Հրամանաւ Տեառն Ագաթանգեղոսի Սրբազան արքեպիսկոպոսի և տիեզերական Պատրիարքի Յունաց տպագրեալ յօրթագիւղ 1831. ՌՄՁ։

1. Այս այն Արթինն է՝ որ ժամանակին տասն, երկուներուն մէջ ամէնէն աւելի պնդողն էր Աստուածատուր պատրիարքի հրաժարելուն վրայ-

պէրևանի վարժարանն ի Սկիւտար՝ իր քոլորի ընդար-ձակ հողերովը։ Եւ ատենք եւս՝ ամիրայաբար կցորդ և համապատիւ էին վերիններէն ամէնէն չոչերուն, և տոհմային կարևոր խնդիրներու համար միասին կը գումարուէին ի ժողով, այսինքն՝ խնդիրներու պատ-րիարքական փոփոխութեանց, եկեղեցիի մատակարա-րական անօրէնութեանց, դպրոցի և հիւանդանոցի շի-նութեանց և այլն։ Ամիրաներուն և ամիրապատիւ աղաներուն թիւն ալ՝ Օսմանեան պետութեան փառա-ւոր պաշտպանութեան ներքեւ՝ հետզհետէ աճելով, և գրաւելով արգասաւոր ու նախանձելի վստահութիւն մը՝ հասած է մինչև 1840ի ժամանակները գրեթէ 200ի, որ կըրցած էին՝ ցայսվայր իրենց պարզ և ան-այլանց (inaliénable) ճարտարմտութեամբը՝ դիզել մեծ հարստութիւն. վկայ՝ իրենցմէ մինչև այսօր կանգուն մնացած քանի մը մեծ կառուցուածներն ու փոլանջա-ները[1], որ կը կենան Պոլիսի ամիրայաբնակ արուար-ձաններուն մէջ, վկայ դարձեալ՝ Անատոլուի և Պոլի-սի եկեղեցիներուն, դպրոցներուն և վանքերուն իրենց նուիրած այլեւայլ յիշատակներն և տպագրել տուած գիրքերն ու մշակել տուած հողերն ու այգիները, թող այն ահագին գումարներն ու գոհարեղէնները, զորս վատնեցին անխնայաբար թէ իրենք թէ իրենց սերունդ-ներուն հօվլօբօթօյ ու անփորձ մասը։ Ամիրայք ատաբա-

այնպէս որ՝ երբ օր մը դարձեալ կը ժխտէր Պատ-րիարքին՝ թէ անպատճառ պիտի տաս հրաժարա-կանդ, խստաբարոյ պատրիարքն ալ չդիմանալով «Եկուր, գրեմ» կ'ըսէ, և թուղթն առնելով իրմէ ալ կը գրէ, բայց հրաժարականէ աղիտաբեր բան մը, հացապետ Արթինին աքսորագիրը – զոր ինքն հացապետը միամտաբար առնելով կը տանի առ որ անկ է։ Այսպէս՝ յանդուգն Արթինը, յանգէտս, իր իսկ աքսորումին լրատարը կ'ըլլայ։

1 Որոնց մին է նաեւ՝ Գումգաբուի պատրիար-քարանին կից մեծ տախտաշէն ապարանքը ծանիկ ամիրային՝ որ վայելչաբար վերածուեցաւ արդի պատրիարքութեան օրով ընդհանուր դիւանատունին։

կառանեն փոխարէնը 1։ Այսր նման ուրիշ հաւաքական մեծ ձեռնարկներ ըրած են, ինչպէս իրենցմէ մէկ քանին՝ Շիրքէթի Խայրիյէի սկզբնաւորական գործողութեանց ու հաստատութեանն իսկ բաժնեկից եղած են։ Այս վերջիններէն էր նաեւ մեր Բէօքմէճի հաճի Մկրտիչ Խալֆան՝ ծնած Կեսարիայի մօտ Հօյախօռ Մանճուսուն գիւղը, և Պոլիս գալով՝ շատ երիտասարդ հասակին՝ կրթուած ճարտարապետ Գրիգոր, Կարապետ Խալֆաներուն և Մ. Քարէլի Իտալացի ճարտարապետին ձեռքին տակ։ Քիչ ատենի մէջ մեծ անուն շինած է՝ իբրեւ միակ Բէօքմէճը Պոլսոյ մէջ. իր շինուածապետութեամբ շինուած են Պոլսոյ մեծ Քըշլաները և քանի մը Եկեղեցիներ. մինչեւ 100 տարի ապրեցաւ և կը վայելէր հայ և թուրք մեծերու յարգանքը. իր վրայ հակիրճ կենսագրական մը գրուեցաւ Բիւզանդիոնի 925 և 926 թիւերուն մէջ 1899։

Առանց պաշտօնապէս կոչուած ըլլալու ամիրայ՝ ամիրաներէն կըրնան սեպուիլ նաեւ Տատեաններու ազգականացած Քափամաճեան բազմեղբայրները՝ վաճառական մանիֆաթուրայի, մանիֆաթուրային ակեղարուն. Պէյլէր Օղլու Յակոբ աղայ՝ ձեռնկալուն Յ. և Մ. Եսայեան եղբայրներուն, Գույումճը Մելքիսեդ աղայ՝ ազդեցիկ և Գումգաբուի եկեղեցւոյն մեծ մը, Քիւրքճի–Պաշիները, Եագըճի Պաշի Պօղոս աղան, կեսարացի Մանուկեաններն ու Կիւմիւշճի Գասպար աղան, որ ոսկերիչներուն և դրամագէտներուն հարստագոյնն ամրագոյնը՝ վասն զի կանխիկագոյնը, ուստի և իմաստնագոյնն եղաւ։ Կայ նաեւ Տոնիկ փոքրիկ ամիրայ մըն ալ՝ Գնասըմ փաշայի որդի եկեղեցիին հողը գնողն և նուիրող։

Այսպէս ահա՝ գլխաւոր անունները, հակիրճ անցեալն ու հանրական և անհատական գործառնութիւնները կը հասնին մինչեւ հոս (1860) այն նախնի մեծատուններուն; որ անցուցին իբր 300–305 տարի. և, իրենց աւանդապահ առաւելութեանցն ու հարստութեանց կցորդուեցան իրենց աւանդական պակասութիւններն ու բարոյական և զգացական աղքատութիւնները, որոնց

1. Ամիրայք, էջ 42–48։

ի հեճուկս կ'ընէր յառաջդիմութեան՝ Պոլսոյ բանիբուն արուեստագէտ գրագէտ ու առհասարակ միջակային դասին մէջ՝ փոքր կարողութիւն մը ընէր: Այդ միջին տարրին եփուած ոյժն էր՝ որ ժամանակին յառաջացած պահանջներուն, անցեալին չափազանցութեանց փոր-ձառութեան, իմաստասէրներուն, Պատրիարքներուն և բարեխնամ կառավարութեան շնորհներուն և միջա-մտութեանց հետ լծորդուելով (սակայն շա՛տ արեւմտեան և ընդօրինակեա՛լ ձեւի մը վրայ) պարզեց, բաշխեց, դատակարգութեան մը լծեց հանրական գործերը՝ յան-դելու համար ներդաշնակութեան մը, որուն ամիրանե-րէն շատ քիչերը կրցան ըլլալ բաժանորդ և հանդի-սատեսս. վասն զի իրենց անցեալ ազնուապետական անչափզիտութեան փոխարէն՝ խաղալիկ եղան երիտա-սարդական ու կարի՛ հասարակական անչափզիտութեան մը, բանիւ, գրով, գործով:

Իրենց՝ ամիրաներուն՝ կենցաղի ճոխ թատրէն իբր խաղաղ անհետանալուն բուն պատճառն ալ՝ իրենք էին: Մեղանաւորներուն մեծ մասը ծագումով Ակնէն էր՝ բաղկացած ոգէտ այլ խորագէտ ու խորամանկ ալ մարդոցմէ, որ կը բանեցունէին իրենց խելքը, իրենց բան ու գործերէն դուրս, իրար քարընդոտնելու, նաեւ վրէժխնդրութեանց: Ամիրաները անկումին մէջ մեծ դերեր խաղացած են՝ չարաճճի սադրողներու և փայ-փայիչ շողոքորթողներու հետ՝ նախանձն ու բարոյական անարժանութիւնները, զորս ոգեղ կ'ըլլայ նշանակել հոս. «Ես անոր հէրը տանիծեմ, ես անոր հախէն ախ-դամ»ները՝ վերջնաբաններն եղած են յաճախ երկու ամիրաները մրուն անհրաժեշտ կործանումին միւսի մը ձեռքով, և յատուկ մոլութիւններ մըն ալ եղած են պատճառ իրենց խոլ մոխումներուն և առհմային վատահամբաւութեանց: Պոլսոյ միջակային ժողովուրդն ալ՝ 60-63էն շատ առաջ կռահած էր այս ամէնը:

Անոնց առհմային բարձրամտութեան ալ բաւական ճարակ կը մատուցանէր՝ [illegible], որ էր հին ու աւանդական վարչապետութիւն մը թաղային ու ե-կեղեցապատական գործերու՝ ընտրուած միայն Պատ-րիարքէն ու պատասխանատու միայն անոր՝ ըստ եր-կուստեք հաճութեանց, դուն ուրեք ըստ իմաստուն հան-րասիրութեան ու անփառասիրութեան:

Այս հինաւուրց միւթեվէլլիներէն զատ՝ կային եկեղեցպաններ ալ, որ եկեղեցիին համեմատ կընային ըլլալ 4էն մինչեւ 12։ Բայց ի սոանցմէ՝ ամէն մեծ եկեղեցի ունէր դպրոցի համար երեք, աղքատներու համար երեք և հիւանդանոցի համար մի հոգաբարձու։

Եկեղեցպաններու պաշտօնը եռամեայ էր, որմէ ետեւ նախորդ եկեղեցպաններու և միւթեվէլլիի փոխանորդին հետ՝ հոգաբարձուներու, թաղին քարոզիչին, Աւագերէցին ու աթոռակալին մասնակցութեամբ ժողով ընելով՝ կը պատրաստէին ցուցակ մը եկեղեցպան ընտրելիներու, կրկին թիւով՝ հոգաբարձուներէն և դուրսէն ուրիշ արժանաւոր մարդոցմէ։ Միւթեվէլլիի փոխանորդը կը մատուցանէր ընտրելիներու այդ կրկնապատիկ անուանացանկը միւթեվէլլիին, որ ինքնիշխանաբար նշանակելով նոր եկեղեցպանները՝ հաստատել կու տար անոնք կոնդակով Պատրիարքին, նոյնպէս դարձեալ միւթեվէլլին նախորդ եկեղեցպաններէն հաշիւ առնելով՝ կը մատուցանէր Պատրիարքին։

Գալով մ–թ–վէլլիին, այդ անուան ունին Մահմէտական Շէյխ–ոնվ Տիրոջ ու մատակարարի գաղափարներն հաւասարապէս։ Վագըֆ եղած ստացուածքներն ու եկամուտները տնտեսելու և մատակարարելու համար՝ կտակարարին կարգած մատակարարը կանուանի մ–թ–վէլլի։

Հայերու եկեղեցապատկան գործերը, կալուածները, կտակները և այլն, մատակարարելու գործն ալ՝ այդ սահմանին հանդիպութեամբը՝ յանձնուած էր այսպէս մ–թ–վէլլիներու, որոնց հսկողութեան ներքեւ կը գործէին վերոգրեալ եկեղեցիներն հոգաբարձուներն և փոխանորդները։

---

## ՎԵՐՋԱԲԱՆ

*Ահա այսպիսի մարդիկ էին հին օրերուն մեծաւոր հայերը։ Եւ ասոնց հետ էր Պատրիարքներուն, բդեաշխաներուն, պէյերուն, վարդապետներուն, վանապետներուն, վարպետներուն, վարժապետներուն, փիլիսոփաներուն, աւագերէցներուն և Կաթողիկոսներուն իսկ[1] բուն գործն ու ճապուկ յարաբերութիւնները. միջին-դարեա՛ն ու գրաբառեա՛ն մարդիկ, ինչպէս ոմն է ըսել, մեծ մասամբ ալ՝ առանց հասկընալու և՛ միջին դարն և՛ գրաբառն և՛ աշխարհաբառը, հասկընալով միայն և միա՛յն այն աշխարհն ու դարը, որուն մէջ կապրէին, և միայն այն լեզուն, որ դրամ ու հանգիստ և ազդեցութիւն կը բերէր։ Այդ դրամէն ու ազդեցութենէն արձանական և քերականական բաժին մըն ալ ելած է ժամանակին դպրոցներուն և վարժապետներուն հետ՝ անցեալ Մխիթարեաններուն ալ[2], իսկ հանգիստէն՝ մեծկակ բաժին մը ինկած է իրենց որդիներուն և թոռներուն այն մասին, որ աշխատելէն աւելի սիրած են*

1. *Ուզողը կըրնայ կարդալ Գաբրիէլ Պատկանեանի կենսագրութեան և Մսեր Մսերեանցի կաթողիկոսներու պատմութեան մէջ՝ Դանիէլի և Դաւիթի կաթողիկոսութեան ատեն և՛ առաջները ա՛լ Ներսէս Ե. Աշտարակեցի կաթողիկոսին՝ վարդապետ եղած միջոցին Պոլսի և Ջմիւռնային մէջ վարած հնարագիտութիւնները, զորս աւանդութիւնն ալ աւելի պտոյտաւոր կը պատմէ։*
2. *Ի լսողաց (՞) եմք՝ թէ Ղազէզ Արթին ամիրան, միայն 1836–1837ի հայերէն մեծ Բառգիրքին տպագրական ծախքին ի նպաստ լեցուցած կամ հոսեցուցած է ջանդրին վանական ծոցը (Վենետիկի վանքը) 1000ի (՞!) չափ ոսկի։*

# ՎՐԻՊԱԿՔ

| Սխալ | Ուղիղ | Երես | Տող |
|---|---|---|---|
| Նախ, անցեալ | Նախանցեալ | 17 | 24 |
| վլանեա | վլանկա | 18 | 25 |
| Եէնի գաԹու | Եէնի գաբու | 18 | 25 |
| Եէնի գաԹու | Եէնի գաբու | 18 | 28 |
| նոյն դարիներն | նոյն տարիներն | 18 | 30 |
| պանեուխտ | պանդուխտ | 18 | 32 |
| ֆանրապատցի | ֆահրապատցի | 22 | 2 |
| ճանոսենաւզ | ճանսուզեան | 24 | 29 |
| 1823 | 1832 | 39 | 5 |
| Ջասգիւղցիներուն | Հասգիւղցիներուն | 42 | 3 |
| Ծմիւռնացի | Զմիւռնացի | 42 | 7 |
| լայնատ (մօտեցուր) արած | լայնատարած | 43 | 10 |
| լուսաւորուԹեան | լաւուԹեան | 43 | 33 |
| Քամանտոյի ի հետ | Քամանտոյի հետ | 49 | 7 |
| Ապուչէխս | Ապուչէխ | 50 | 36 |
| կը ժխտէր | կը ժտէր | 55 | 25 |
| շքեղաչան | շքեղազան | 56 | 11 |

*Հասոյթին մաս մը Միւսարի Աղքատախնամին յատկացուած է*

---

# ՀԻՆ ՕՐԵՐ

## ԳՈՒԷՏ ԽԱՉԱՏՈՒՐ ՄԻՍԱՔԵԱՆ

*ԵՒ*

## ԻՐԵՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԻՄԱՑԱԿԱՆԻՆ ՎՐԱՅ

## ՀԱՅԵԱՑՆԵՐ

1815էն 1891

Ց. Գ. Մ.



Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՍԱԳԱԵԱՆ
*Ղալաթիա, Պուրճունեյու խան թիւ 7*
1907

344

*Հասոյթէն մաս մը Սկիւտարի Աղքատախնամին յատկացուած է*

133բ

# ՀԻՆ ՕՐԵՐ

## ՊՈՒԷՏ ԽԱՉԱՏՈՒՐ ՄԻՍԱՔԵԱՆ

ԵՒ

## ԻՐԵՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԻՄԱՑԱԿԱՆԻՆ ՎՐԱՅ ՀԱՅԵԱՑՆԵՐ

1815էն 1891

Ե. Գ. Մ.





Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՍԱԳԱՅԵԱՆ
աչարքիա, Գուրշունլու խան թիւ 7
1907

# ՄՈՒՏՔ

Այս կենսագրական բանաքննութիւն Գուէտ Խաչատուր Միսաքեանի վրայ՝ արդիւնք երկարամի մօտուստ դիտողութեանց և Նա-կրկիտ բացառիկ ճգանց՝ հրատարակուած է միանգամ 1898ի Թիւ 1—14 ՄԱՍԻՍներուն մէջ։ Կարեւոր յղկումներով, յաւելուածներով և ինքնագիր կտորներով հոս վերստին կուտանք զայն, քաջալերուած մանաւանդ առաջինին գեղեցիկ ընդունելութենէն ու ապագային ճշմարտութեան ցոլքեր մը աւելի աւանդելու դիտումով՝ թէ՛ Գուէտին թէ՛ իր ժամանակին վրայ։

# ՀԻՆ ՕՐԵՐ



## ԽԱՉԱՏՈՒՐ ՄԻՍԱՔԵԱՆ

ԵՒ

### ԻՐԵՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԻՄԱՑԱԿԱՆԻՆ ՎՐԱՅ ՀԱՅԵԱՑՆԵՐ



### Ա. ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

*Յառաջաբան տեսութիւններ. — Գ. Խ. Միսաքեանի ծնունդն եւ Պուէտ դրուատանունը.— Նոյն անունի Պոլիսի իմաստուն Պատրիարքն ու հայկական ոգին.— Պատրիարքարանի ամիրայական վարչութիւնը.— Պաշուէլիններն ու հռչակաւոր գրագէտները.— Վենետիկի յայնժամու չոր Մխիթարեանները. — Ժամանակին պատմական-աստուածաբանական զնացքն եւ զուտ տաղաչափական բանաստեղծութիւնը. — Գրիգոր Փեշթիմալճեան ու Եզեկեան իբրեւ ներքողներ ժամանակին. — Երկիրին արհեստական վաճառական ու կրօնական վիճակը.— Միսաքեանի կայտառ ու խստամբեր մանկութիւնն եւ աշակերտութիւնը.— Իր շրջապայրին ներգործութիւններն իր վրայ. — Սկիւտար Եէնի-Մահալլէ թաղն ու դպրոցն եւ եկեղեցին, միւս թաղերն ու մեծատունները.— Երուսաղէմական Հոգետունը, անոր անցեալը, Տէրոյենցի վրայ.— Միսաքեանի ոգիընկալութիւնը արթնութիւնն եւ բանաստեղծիկ բերումները. —Կաշակերտի Գ. Փեշթիմալճեանի.— Իր սաղերը՝ վե՛ր ժամանակին տափակութենեն.— Իր Այրամանւաքը, ուխտագնացութիւնն յԵրուսաղէմ.— Ինքն Աստ-*

ուածատուր եպիսկոպոսի քով, Ադամի կերած պտուղն Ասփաստուր եպիսկոպոսի բերանը.— Միսաքեան երե-սուն եւ հինգ տարեկան հասուն տարիքին մէջ, Պլու-տարքոս՝ բարոյական առաջնորդ իրեն.— Ինք Մխի-թարեանց հետ. — Սկիւտարի ճեմարանին բացումը. — Միսաքեան եւ Ի. Պարտիզպեան կը գծէին Տերոյեն-ցի հետ, իրենց ծածկագործութիւններն եւ կռիւ. — Միսաքեան կը ձգէ ճեմարանն եւ կը դասախօսէ ա-ռանձին.— Իր զուարթամիտ եւ նորասէր բարքը. — Վարագոյրին ցեղումը. — Իր հօրը մահուան վրայ կը մենանայ.— Գէորգ Միւհէնտիսեան իր յորդորելովը կը հիմնէ Սկիւտարի ճեմարանին մէջ տպարան մը. — Միսաքեանի այն ատենուան հետեւողները. — Իր համբաւն ու հեղինակութիւնը.— 1848ին Պետրոս աղա Խորասանճեան՝ կուզէ ղրկել իր երկու որդիներն Մի-սաքեանի հետ ի Բարիզ.— Իր յայնժամու լեզուն եւ գրական իմացական կարողութիւնը:

# Ա.

*«Յարգա՛նք կենդանիներուն*
*«ճշմարտութի՛ւն մեռածներուն»։*
*«ԹԻԷՐ»*

*Այո՛ «Յարգա՛նք կենդանիներուն և ճշմարտութիւն մեռածներուն». սակայն նաև որչա՛փ դժուարին է ճշմարտութեամբ պատմել կեանք մը՝ բաւական լայն և իր անտես կողմերուն ալ բաւական խրթին, խրթնագո՛յն շրջավայրի և ապաշնո՛րհ ժամանակի մը մէջ՝ մանաւանդ երբ այդ կեանքին տէրն ունեցած ըլլայ՝ դեռ կենդանի ժամանակակից անձերու հետ՝ առընչութեան անթափանցելի միջնաբարներ, անբնական սրտնութիւններ, զորս կենցաղական հաստատեալ սովորութեան մը հակառակ՝ դուրս բերելու համար վարագոյրին ներքևէն, բաւական արիութիւն և հզօր դեր պէտք է գրողին։*

*Ասոր համար է որ երկար վարանումներէ ետև՝ մենք նոր կը համարձակինք գիրի առնել այս կարգէ դուրս և կարևոր անձնաւորութեան վրայ քանի մը հանրական տեղեկութիւններ ու քննասիրական խորհրդածութիւններ։*

*Թէպէտ քաղաքակցաբար մօտէն դիտող ալ եղած ենք իր վերջին տարիներուն և իր*

ապրելու եղանակին քանի մը ներքին կողմերուն՝ մանաւանդ իր իսկ անյարդար խոստովանութեանց ծակոտիէն, սակայն, կը մտածենք՝ որ լաւագոյն եւս կըլլար՝ եթէ ինք իսկ, իբր անձ հոյակապ, գրած ըլլար խոստովանօրէն իր կենցաղին գլխաւոր պարագաներուն հետ՝ իր մտքին ու իմացական գործունէութեանց անպատրուակ պատմութիւնն ալ։

Այն ատեն աւելի ստոյգ վկայագրութեամբ պիտի կրնայինք հաշտեցունել իր վարքին դէզ մը փոշոտ ներհակները, առանց ըլլալու Քսենոփոն կամ Պողուէլ՝ պիտի կրնայինք նկատել, այդ անձնագրութեան մէջ, Թերեւս Սոկրատի մը կամ Ճոնսընի մը հոգիին ցոլքը իր մարդկային ու երկնային կրկնակի կողմերովը։ Իր հոգեբանութիւնը պիտի ուրուանար ընթերցողին մտքին մէջ՝ աւելի հաստատ եզրերու եւ գոյներու վրայ, աւելի համոզումներով մը պիտի խրախուսուէին յետոյինները, եւ մենք շատերուն ալ ակամայ չպիտի ապերախտանային ափ մը մոռցուած անուններու, որ գոց եւ իմացապէս անբեղուն ատեն մը ողորմելի միջոցներով՝ այդպէս կանուխ առաքինացան ու յաջողեցան գլել իրենց ժամանակակիցներուն՝ հինէն դէպի նորին շէնքը ձգտելով յաղթ սիւներու պէս։

Որչափ գիտենք, գէթ գրելով ապրողներէն իսկ, դեռ ոչ ոք փորձեց անաչառու-

թեամբ խմբագրել պատմութիւն մը. մէկը չարիացաւ ժամանակին հրապարակել վերջին 60-70 տարիներուն մեր մէջ եկած գացած մարդոց և իրերու նկարագիրը, որ մնացած քանի մը ալեւորներու առկայծ յիշատակութեանց, ասդին անդին պահուած ձեռագիր նամակներու և անտեսուած կարգ մը տետրակներու մէջ կը պլպլան գօս պատրոյգներու լոյսին նման։ Մինչեւ հիմայ երեւցած անձնագրութեանց մեծ մասն ալ չատ տեղ կողմնական անպէտ երեւոյթներով պաճուճեալ է։ Ամէն ոք իրենն յառաջ կը քշէ. հոն երկրորդական զուարճալի բայց պիտակ ալ պարագաներ անցած են էականներու տեղ. հոս պզտիկ տեսակէտներ՝ անձնասիրութեամբ բակ առած ու խոշորացոյցներու փոխարկուած են. վարժապետական ու հռետորական փոքրոգի մեծամտութիւն մը տիրած է իբր առ հասարակ լրերագով կամ իրերանախատ հրապարակի մը վրայ, նոյն իսկ էական խընդիրներու վերաբերումով. ժամանակակից իրերու չահով կամ կիրքով կցորդ մարդիկ՝ ըստ անձնիւր զինչպիտութեան՝ կցկցած են անցեալ յիշատակներու պատառիկներ մը արուեստագիտական ողորկութեամբ զգեցած պատմական ձեւ։ Ուր խնդիրը անձի պարմանք կը բերէ՝ հոն Կիկերոն է գրողը, փոյթ չէ թէ իմաստութիւնները կը հազան և Կղիով կը

ժպտի․․․։ Ա՛յս է վերջին ժամանակներու նշանն ու ոգին։

Ուստի՝ համառօտելու ատեն քանի մը ծանօթութիւններ Խ. Գ. Միսաքեանի գրեթէ սուրած կծկուած կեանքին վրայ՝ կը ջանանք, մեր դիրքին ու մանաւանդ մեր սիրտին ընբռնումին իսկ, հեռացունել մենէ թէ՛ կենսագիրի անձուկ դերը թէ՛ ջատագովի կոյր եռանդը։ Անաչառ ու իրագէտ ընթերցող մըն ալ եթէ մեր գծած այս արձակ սահմանէն տեղ տեղ շեղած տեսնէ մեզ, թող հայի հաշտ աչօք՝ համարելով մեզ հոն իբր հատուցանող յապաղեալ ու յանձնարարեալ ալ պարտք մը անոր յիշատակին, որ իր բոլոր դառնութեամբ ա՛նոյշ թուեցաւ մեզի իր կենդանութեան ատեն և քաղցրանալու էր մահէն ետև ալ։ Մենք իրեն ո՛չ տիրապէս աշակերտած ո՛չ ալ տիրապէս հետեւող մը եղած ենք մեր գրականութեանց մէջ, այլ աւելի բարեկամ ու սիրողը եղած ենք՝ իբրև ներհուն և անաչառ մանաւանդ լքուած բանաստէրի մը։

Խարբերդցի դերձակ Միսաք աղայի որդի՝ Սկիւտարցի մօրմէ ծնած է Խաչատուր Միսաքեան 1815ին Խաչվերացի օրերը։ Մկրտութեան անունն է Խաչատուր, որուն 20 տարեկանին լծուեցաւ Պուլէս դրուատանունն

իբրեւ տանենին միակ բանաստեղծի (*)։ Ունե-ցած է երէց եղբայր մը Ցովսէփ անուն, որ՝ ինչպէս մայրն ալ՝ մեռած է մինչ ինք Բարիզ կը գտնուէր։

Ժամանակին Պոլսոյ Պատրիարքն էր Ադ-րիանուպոլսեցի Պօղոս արքեպիսկոպոսը՝ դա-րիս այդ կէսին ամէնէն իմաստուն և բարի պատրիարքը, որ եռանդով աշխատեցաւ մա-նաւանդ Լուսաւորչական և Հռոմէական հա-յերուն աստուածաբանական միութեան և որուն առեն Պոլսոյ Հայ գրողները՝ կոյս ու-ժով մը նախանձայոյզ եղան հին հայ լեզուի բարգաւաճումին։ Նոյն առենի խել մը ձե-ռագիրներն ու աստուածաբանական գրուած-ներն աչքէ անցունողը՝ պիտի տեսնէ որ Վե-նետիկի Միաբանութեան ճոխ հայկաբանութեան հանդէպ՝ Պոլսոյ գրագէտներն առած էին արդէն այն վճիռ ու ոսկեդարեան ըսուած ուղղութիւնը, որ յաճախ ձախողաբար կը բեկ-բեկէր աստուածաբանական ու ամիրայական վէճերու պատճառով և զոր 10-15 տարի

(*) Այս Գուէտ անունը, որուն ոգիով չափ նախան-ձախնդիր էր ինք, մանաւանդ ծերութեան առեն, ընծայած է իրեն Ցակոբիկ աղա Մանուէլեան ճեմարանի բացումին առիթով արտասանած ատենաւորին պատեհութեամբ՝ հը-րապարակով ըսելով «Շատեր արդէն կը կոչուին վարժա-պետ անունով և դուն՝ որովհետեւ լաւ ոտանաւոր ալ կը գրես՝ արժանի ես Գուէտ տիտղոսին, այսուհետեւ Գուէտ պիտի մականուանենք քեզ»։

